ՍԱՐԳԻՍ ԲԷՀԱԹՐԵԱՆՑ

# ՀՈՂԱՅԻՆ ԵՒ ԱՆՁՆԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ

## ՀԻՆ-ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ




(*Արտատպած «ՄՈՒՐՃ» ամսագրից*)





**ԹԻՖԼԻՍ**
**ՏՊԱՐԱՆ Մ. Դ. ՌՈՏԻՆԵԱՆՑԻ**
**Типографія М. Д. Ротиніанца, на Гол. пр. № 41.**
**1894**



# ՀՈՂԱՅԻՆ ԵՒ ԱՆՁՆԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

## (ՃՐՋԱՆ ԱՌԱՋԻՆ)

### ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Հողային և անձնական իրաւունքների կանոնաւորելու հարցը ամենահին ժամանակներից սկսած ամենայն տեղ և զանազան ժողովուրդների կեանքում ամենաէական կէտերից մէկն է եղել և միշտ մեծամեծ աղմուկներ է զարթեցրել մարդկանց մէջ։ Կռւով և արիւնով էին ձեռք բերում ու հաստատում այդ իրաւունքի վերաբերեալ կարգ ու կանոնները։*

*Ներկայումս էլ այդ հարցը դեռ լուծուած չէ և հետզհետէ աւելի և աւելի սուր բնաւորութիւն է ստանում, որովհետև հնումը տեղի ունեցող չարիքները այժմս էլ կան՝ միայն կերպարանափոխուած։ Հաւանական է, որ ապագայում էլ այդ հարցը մեծ շփոթութիւնների պատճառ է դառնալու։*

*Մարդկային հասարակութեան հին կազմակերպութիւնը հաստատուած է եղել ի միջի այլոց երկու հիմունքների վրայ. նախ՝ մարդու անձնաւորութիւնը լայն թէ սահմանափակ չափով կարող էր պատկանելութեան (սեփականութեան) առարկայ լինել. և երկրորդ՝ հողի գլխաւոր սեփականութեան իրաւունքը կարող էր միայն ազնուականներին պատկանել։ Երբ ծագեց այն նոր գաղափարը, թէ մարդը պատկանելութեան առարկայ չպէտք է լինի, և որ հողի իրաւունքը որոշ պայմաններով կարող է ձեռք բերել ամեն մի դասակարգի պատ-*

կանոն անձնաւորութիւն, անցեալ դարուց սկսած Ռուսիայի առաջաւորները, գրականութիւնը և տէրութիւնը ուսումնասիրութեան առարկայ դարձրին՝ թէ ինչպէս մտցնեն այդ գաղափարը իրանց կեանքի մէջ։ Այդ բանը իրա ձեռքն առաւ տէրութիւնը և ներկայ դարուս վաթսունական թուերից սկսած մի շարք նոր հիմունքների վրայ հաստատուած օրէնքներ հրատարակեց։ Նոր օրէնքների հիմունքների համեմատ իրաւատիրութիւնը անթիւ վէճերի առարկայ դարձաւ, դիւանատները լցւեցան գործերով։ Ռուսիայի ամենալաւ ոյժերը նուիրուեցին այդ գործին։ Անթիւ գիտնականներ, վարչական անձեր և ազնիւ մարդիկ ուսումնասիրութիւն ուսումնասիրութեան ետեւից էին անում թէ հէնց իր տեղումը, այսինքն գիւղերում և դատարաններում, և թէ դիւաններում, և քննում այդ առարկային վերաբերեալ զանազան հարցերը։

Այդ ջանքերի պտուղը այն եղաւ, որ Ռուսիայում «կրէպոստնոյ» (ճորտութիւն) կոչուած իրաւունքը վերջացաւ. հողի իրաւունքը նոր հիմունքների համաձայն կանոնաւորուեց։

Կան Ռուսիայում շատերը, որոնք այդ գործիչների վրայ արատներ են դնում և նոցա սխալների վրայ են մատնանիշ անում։ Ճիշտ է որ գերին միանգամից ազատ չէր կարող դառնալ։ Դրանք միանգամից չէին կարող սովորել այն կարգ ու կանոններին, որոնք լուսաւորեալ մարդուն էին յատուկ։ Այդ պատճառով ռուսները մեծ զոհերի և չարչարանքների ենթարկուեցին և պիտի ենթարկուեն մինչև չընտելանան լուսաւորեալ ազգերի կարգ կանոններին, և չսովորեն ազատութիւն վայելել։ Բայց անտարակոյս այդ յեղափոխութիւնը, որով կեանքի հին և փտած հիմունքները քանդուեցան, հայրենասիրութեան և մեծահոգութեան ծնունդ էր։ Այնուամենայնիւ Ռուսիայում համեմատաբար գործը հաստատ և պարզ կերպով կարգադրուեց, որովհետև հողային և անձնական իրաւունքների պատմութիւնը, ծագումը և գործադրութիւնը հարիւր տարուց աւելի ուսումնասիրութեան առարկայ էին դարձրել և արդէն հարուստ գրականութիւն կար այդ մասին...

Այդ մեծ յեղափոխութիւնը դիպաւ և Կովկասին. բայց այստեղ գործը ուրիշ տեսակ էր։ Տեղական իրաւունքները չափից դուրս քիչ էին ուսումնասիրուած, այն էլ տէրութեան ձեռքով և թարգ-

մանների միջոցով, մինչդեռ այստեղ հողային և անձնական իրաւունքը տարբեր հիմունքների վրայ էր եղել հաստատուած քան Ռուսիայում։ Այդ պատճառով էլ այստեղ աւելի ուսումնասիրութեան էր կարօտ առարկան. մանաւանդ մեր կեանքը, պատմութիւնը և գրականութիւնը շատ այնպիսի անորոշ կողմեր ունին, որոնք թէ դժւար հասկանալի են և թէ բոլորովին կուսական դրութեան մէջ են ուսումնասիրութեան կողմից։ Այդ հիմունքների փոփոխելը անմիջապէս ազդեց ամեն մէկիս վրայ թէ նիւթապէս, թէ բարոյապէս և թէ մտաւոր կերպով։ Ոմանք ենթարկեցին այդ ազդեցութեանը հեռուից, ոմանք մօտիկուց; ոմանք թոյլ և ոմանք էլ ուժգին կերպով. մանաւանդ զգալի էր այդ յեղափոխութիւնը հողատէրերի համար։ Նոր օրէնքի հիմունքների վրայ հաստատուած նոր օրէնքները այստեղ էլ իրանց ազդեցութիւնը ունեցան, դրանք բազմաթիւ վէճեր յարուցին տէրութեան, հողատէրերի և հողագործների մէջ։ Այն սուր բնաւորութիւնը և կերպարանքը, որ ունի այստեղի վէճը, Ռուսիան չգիտէ, որովհետև այնտեղ օրէնքը նախատեսել է պատմութիւնից և կեանքից ստեղծուած պայմանները. մինչ նոյնը չէ կարելի ասել Կովկասին վերաբերեալ։ 1861 թւականի սահմանագծութեան (межеваніе) օրէնքները բոլորովին ուշադրութիւն չեն դարձրել տեղական իրաւունքների վրայ։ Այդ բանի մասին ես մատնանիշ եմ արել 1881 թւականի իմ գրւածքում «Սահմանագծութեան և հողային հարցին վերաբերեալ գրքոյկում (Межеваніе въ связи съ поземельнымъ вопросомъ)։ Թէև 1870 և 1877 թւականների դիւղացոց և հողատէրերի վերաբերեալ օրէնքներում ուշադրութիւն էր դարձրած դրա վրայ, բայց տեղական իրաւունքները այնու ամենայնիւ ենթարկւած չեն եղել լուրջ ուսումնասիրութեան, թէև իրաւաբանութիւնը պահանջում է, մի որ և իցէ առարկայի վերաբերեալ ծագած իրաւունքը կանոնաւորելուց առաջ, ուսումնասիրել դրա պատմութիւնը, գործադրութիւնը և դոգման։

Գուցէ այդ է պատճառը, որ մենք տարօրինակ երևոյթների ենք հանդիպում. օրինակ Մինգրէլիայում միևնոյն հողի վրայ 20—30 կողմից վիճում են։ Օրէնքը կարող է միայն մէկին տէր ճանաչել, մինչ միւսերն էլ անհիմն վէճեր չեն յարուցած և իրանց իր-

ւունքները հաստատելու համար ունին հիմքեր։ Արևելեան Կովկասում վիճողների և վկաների թիւը չափազանց է։ Կարծես ամբողջ ժողովուրդն է մասնակցում վէճերին, և դրանցից տեսակ-տեսակ գործեր են առաջանում։

Հողագործը, իր պարզամտութեամբ, իւր իրաւունքը հաստատելու համար, շատ անգամ մատնանիշ է անում այն սահմանաքարերը, որոնք դրած են եղել գուցէ 1800 տարի առաջ Արտաշէսի օրերով, կամ քօթուկն է ապացոյց բերում իր արդարութեանը։ Մէկը օրինակ սովոր էր տալ տիրոջը իւր ձեռքի տակ եղած հողից մի հինգերորդ մասը, իսկ տէրը սկսում է արդիւնքի քառորդը, կէսը կամ երրորդը պահանջել, և ահա ձեզ վէճի և շատ անգամ բազմամեայ վէճի պատճառ։ Մի տեղ նոր օրէնքի հիման վրայ ծանրաբեռնուած է հողագործը յօգուտ հողատիրոջ, իսկ մի այլ տեղ հակառակն ենք տեսնում։ Այդ տեսակ վէճերի մի մասը վերջացել են, միւսները մնում են. և դրանց պատճառը միայն հիմունքների փոփոխման մէջը չէ, որովհետև փոփոխուեցին ընդհանուր կալուածների սահմանները, տէրերը,—փոփոխուեց նաև մեծամասնութեան իրաւունքը։

Բայց կան շատ բաներ, որոնց վերայ դեռ օրէնքներ պիտի տրուեն, որոնք պիտի որոշուեն և այլն։ Դոցա թւին պատկանում են՝ գիւղացիներին յանձնած և հողատէրերին հասանելիք արտերի և մարգագետնի սահմանագծերը, անտառներից և արօտատեղերից օգտուողներին վերաբերեալ հարցերի կանոնաւորելը (сервитюты), արքունական գիւղացոց կեցութեան կանոնաւորելը, խիզանների հարցը, բահրէն, ղալան և կուլուխը փողի վերածելը. գիւղացու գետինը սեփականութիւն դարձնելու հարցը (выкупы крестьянскихъ надѣловъ), ջրի վերաբերեալ հարցերը և այլն։

Մինչև անգամ շատ տեղ հողից հին կարգ կանոնով օգտուելու իրաւունքը չի ոչնչացած։

Ուրեմն շատ բան դեռ սպասում է օրէնսդրութեան, շատ հարցերի լուծումն էլ կախուած է տէրութեան և դատաստանատների բռնելիք ընթացքից։

Բայց զարմանալին այն է, որ հին կարգ-կանոններում կան այնպիսի կէտեր, որոնք ժամանակի ընթացքում կամ ան-

խախտելի էին մնացած և կամ չափից դուրս ժողովրդականութիւն էին ստացել: Վասնորոյ գրքեր արժանի են խորին ուսումնասիրութեան:

Կարծես Արտաշէսի սահմանաքարերի պէս այսօրուան բահրէն նոյն տասանորդն էր, որի վերայ Փաւստոսը գրում է.

«Եւ զկարգս պտղոյն և տասանորդացն՝ որ 'ի նախնեաց սովորութիւն էր տալ յեկեղեցին, վասն այնորիկ հանէր հրաման ընդ աշխարհ՝ զի մի՛ ոք տացէ (Փ. 193):

Կարելի է նմանապէս կարծել, որ հին «Հայկական կազմակերպութիւնը, թէև կերպարանափոխուած, պիտի հասնէր մինչև մեր օրերը. այսպէս, օրինակ, պատմական ա զ ա տ ն ե ր ի ն մենք հանդիպել ենք Կովկասում, որոնք դեռ կրում էին իրանց հին անունը, թէև հին իրաւունքների բեկորներն էին պահպանել միայն:

Մելիքը կամ խանը հին նահապետը չէր, բէգը հին նախարարը չէր: Յայտնի բան է երբ մի կազմակերպութիւն այդպէս տեւողական է, անշուշտ կունենայ իր մէջ և համակրելի կողմեր:

Օրինակ մեր հին կեանքը ստեղծել էր 'ի միջի այլոց մի տեսակ հողի սահմանափակ սեփականութեան իրաւունք: Գուցէ վաղը Եւրոպան էլ կընդունի կամ ինքը կը ստեղծի այդ տեսակ մի իրաւունք, որովհետև հողի սեփականութեան հարցը այսօր այնտեղ էլ վէճի առարկայ է: Բէնտամ, Ժան Բատիստ Սէյ, Բաստիա, Կէրի, Ռօշէր, Շէֆլէ, Օգիւստ Կոնտ, Լաբուլէ, Ադոլֆ Ձամոէր—հողի սեփականութեան կողմն են, իսկ Ռիկարդօ, Միլ, Սպէնսէր, Ամբրուազ Կլեման, Վագնէր և այլք—հողի սեփականութեան հակառակ են:

Եւ եթէ այդ երևելի գիտնականները երկու բոլորովին տարբեր կարծիքի են այդ մասին, մի՞թէ հաւանական չէ, որ միջակ կարծիքը, այսինքն հողի սահմանափակ սեփականութեան գաղափարը, վաղը ոյժ ու մարմին ստանայ և ընդունուի Եւրոպայում: Եւ ոչնչացնելով այդ իրաւունքը, մի՞թէ մենք կորուստ չենք ունենայ:

Ես այստեղ միայն մի առարկայի վերայ մատնանիշ արի, բայց ուսումնասիրութիւնը կարող է շատ բան պարզել. օրինակ, եկամուտի համեմատ հարկ առնելու սովորութիւնը նոր է մեր մէջ մտնում (ПОДОХОДНЫЙ НАЛОГЪ), մինչ Կովկասի համար այդ նոր բան չէ, և այլն և այլն:

Բայց այդ ուսումնասիրութիւնը շատ դժուար է, որովհետև Վրաստանում կան թէ մնացորդներ և թէ խառնուրդներ Հայոց, Վրաց, Պարսից, Հռովմայեցոց, Արաբացոց, Պարթևաց, Ասորոց, Տաճկաց, Չինաց և ուրիշ ազգերի իրաւունքների։ Կարծես այստեղ, ուր այդքան ազգեր են ապրել և շփուել միմեանց հետ, աւելի նպատակայարմար օրէնքներ պիտի առաջ գային։ Ո՛ր աստիճանի ազդել են այդ ազգերի օրէնքները մէկը միւսի վրայ։ Որտեղից է սկսւում մէկը և վերջանում միւսը,—որոշ չէ։ Ուսումնասիրութեան միջոցին այդպիսի շատ հարցեր են ծագում։ Վաղուց է, որ մեր բանասէրները զգացել են այդ տեսակ ուսումնասիրութիւնների կարևորութիւնը և մեր պատմութեան վերաբերեալ շատ ձեռագրեր տպագրել տուել, որոնք հարուստ նիւթեր են մատակարարում և կարող են մեր ընտրած հարցի պատմական կողմը լուսաբանել։

Մեր կարծիքով հէնց այդ հին աղբիւրների ուսումնասիրութիւնից էլ հարկաւոր էր սկսել գործը և մենք այդպէս էլ արինք։

1880 թւականներից մենք սկսեցինք ուսումնասիրել հողային և անձնական իրաւունքը Վրաստանում 12—18 դարերին վերաբերեալ և մեր աշխատութիւնը փոքրիկ գրքոյկով հրատարակեցինք (Личныя и поземельныя права въ древней Грузіи, Тифлисъ, 1886 годъ). Բայց հէնց առաջին փորձը մեզ ցոյց տուաւ, որ, հին դարերը թողած, չի կարելի գործը սկսել միջին և նոր դարերից, և երկրորդ՝ նախ հարկաւոր է հայոց իրաւունքով զբաղուել, որովհետև այդ լեզուով հարուստ նիւթեր կան. մինչ վրաց իրաւունքին վերաբերեալ նիւթերին հետ ծանօթանում էինք ռուսերէն թարգմանութիւններից։

Այստեղ մեր փորձը շարունակում ենք աւելի հիմնաւոր կերպով, թէև սա մեր աշխատութեան միայն սկիզբն է։ Այդ իրաւունքների հիմունքները և մանրամասնութիւնները պարզելու համար շատ աշխատութիւններ են հարկաւոր։

Մեր գործը բաժանում ենք չորս շրջանների՝ ամփոփելով դրա մէջ Հայկազանց, Արշակունեաց, Արշակունի-Բագրատունեաց, Ռուբինեանց և Տաճկա-Ռուսաց շրջանները։ Սորանով տալիս ենք առաջին շրջանը, իսկ այնուհետև մտադիր ենք, եթէ մեր միջոցները ներեն՝ աւարտել այդ ամենը։ Թէև Արշակունեաց շրջանին վերաբե-

րեալ բաժինն էլ գրեթէ պատրաստ է, բայց դորա հրատարակութիւնը ուշացնում ենք, սպասելով քննադատների կարծիքներին ներկայ աշխատութեան մասին։ Նիւթերի կողմից, բացի Էմինի, Խնճիճեանի, Պալասանեանի, Խորէն Ծ. վ. Ստեփանէի գրուածքներից, օգուտ ենք քաղել Ագաթանգեղոս, Խորենացի, Եղիշէ, Փաւստոս Բիւզանդացի, Թովմա Արծրունի, Զենոբ Գլակ, Յովհան Մամիկոնեան և Ղազար Փարպեցի մատենագիրներից։

Կարելի է կան և ուրիշ նիւթեր և մինչև անգամ անտիպ ձեռագիրներ, որոնք կարող են ուրիշ կողմից լուսաբանել մեր կարծիքները, ուստի նախօրօք կը յայտնենք մեր շնորհակալութիւնը այն բանասէրներին, որոնք մատնանիշ կանեն մեզ այդ նիւթերի վրայ։ Ես քաջ հայկաբան չեմ, գործի կարևորութիւնն է եղել ձեռնարկութեանս դրդողը։ Ընթերցողներից խնդրելով ներողամտութեամբ վերաբերուել դէպի աշխատանքս, իսկ բանասէրներից՝ մատնանիշ անել զգալի սխալներիս վրայ—սկսում եմ գործս։

## I

Աւելորդ չենք համարում մի հայեացք ձգել՝ թէ ինչ են գրել մեր յայտնի գրողները Հայկազանց և Արշակունեաց ցեղական և թագաւորութեան կազմակերպութեան վերայ։ Խորէն ծայրագոյն վարդապետ Ստեփանէի կարծիքը կարելի է հասկանալ նորա գրած հետևեալ տողերից.

«Հայաստանը բաժանուած էր բազմաթիւ մանր տոհմերի և իշխանութիւնների, որոնք սեպհականութիւն էին առանձին նախարարական տների. սոցանից իւրաքանչիւրը անկախ փոքր իշխանութիւն լինելով, չէր կամենում ենթարկուել մի մեծ կենդրոնական իշխանութեան, որով ի հարկէ կը կորցնէր իւր սեպհական անկախութիւնը։ Եւրոպական աւատական իշխանների պէս ցեղի մէջ միայն աւագ անդամն էր ժառանգում ցեղական կալուածները և տէր տիտղոսը։ Բայց երբ Պարսկաստանում Արշակունի Պարթևական ցեղապետութիւնը հաստատուեցաւ, որի թագաւորները, նոր քաղաքականութիւն գործ դնելով, փոքր առ փոքր իրանց ազդեցութեան ենթարկեցին աւե-

զօրաւոր հայկական իշխաններին, հայ իշխանները Բագրատունիների հետ յօժարութեամբ Հայաստանի թագաւոր ընդունեցին Քրիստոսի ծննդից մի և կէս դար առաջ Արշակունի ցեղի թագաւորազն Վաղարշակին: Այսպէս հաստատուեցաւ Հայաստանում թագաւորական իշխանութիւնը, ոչ թէ նորա քաղաքական կարեւորութիւնը պարզապէս զգացնելու պատճառով, այլ արտաքուստ գործ դրած ազդեցութեամբ հայկական իշխանների վերայ, որոնք միեւնոյն ժամանակ իրանց ապահովացրին, թէ իրանց իրաւունքները անխախտելի կը մնան:

«Եւ արդարեւ հայոց թագաւորի գործը եղաւ իշխանների բոլոր իրաւունքների և կալուածների վաւերացումն: Այս պատճառով Հայաստանի թագաւորներն այն հզօր իշխանութիւնը չունէին, ինչ որ ունէին պարսկական թագաւորներն ամեն ժամանակ Պարսկաստանում: Հայաստանում թագաւորների իշխանութիւնը գրեթէ չէր երեւում, այլ երեւում էր նախարարների իշխանութիւնը: Հայաստանը մի տեսակ ազնուապետական մանր պետութիւններից էր կազմուած: Հզօր իշխանները միայն եռանդուն թագաւորների օրերով հնազանդւում էին և կատարում էին կառավարութեան հրամանները, իսկ [թոյլ] թագաւորների ժամանակ նոքա գրեթէ անկախաբար էին ապրում: Իշխաններից առաւել զօրաւորները անկախ յարաբերութիւններ էին սկսում դրացիների հետ, բանակցութեան էին մտնում նոցա հետ, յաճախ ընդդիմադրում էին թագաւորի իշխանութեանը և պատերազմների ժամանակ թագաւորի թշնամիների կողմն էին բռնում...: Հայաստանի բնակիչները մեծ մասամբ գիւղացիներն էին, որոնք հաւատարիմ էին իրանց իշխաններին և կառավարւում էին հնաւանդ սովորութիւններով: Եւ իշխանները այս սովորութիւնները չէին խախտում. որովհետեւ չկար որ և է տեղեկութիւն ոչ միայն գիւղացիների ու և իցէ ապստամբութեան մասին, այլ և գանգատների մասին թէ նախարարները նոցա նեղացնելիս լինէին: Միջին դասակարգը, որը տէրութեան մէջ միշտ նշանակութիւն ունի, երեւի այն ժամանակ բազմաթիւ չէր, որի ապացոյցը քաղաքների սակաւութիւնն էր, և երկրորդ այս միջին դասակարգում Դ դարում հրէաների թիւը աւելի էր քան թէ բնիկ հայերինը»:

Պալասանեանը գրում է.

...«Կրօնի պէս կառավարութեան սկիզբն էլ խոր հնութեան մէջ ծածկուած է. իւրաքանչիւր ցեղ, իւրաքանչիւր ժողովուրդ, երբ միասին խմբւում է ընկերական կեանք վարելու համար, պէտք է կարգաւորեալ կառավարութիւն ունենայ որոշ օրէնքներով. բայց կառավարութեան մէկ կամ միւս ձեւը կախուած է երկրի դիրքից, ժողովրդական կեանքի պայմաններից և շրջակայ ազգերի բնաւորութիւնից: Պատմութիւնից տեսնում ենք, որ քարքրոտ և աւազոտ տեղերում և ծովային ափերին բնակւող ժողովուրդները, իրանց չոր ու ցամաք երկրի պատճառով, շուտով սովորում են դաշտային երկիրները ասպատակել կողոպուտ անելու դիտաւորութեամբ: Այսպիսի ժողովուրդների մէջ բնականապէս գերագոյն իշխանութիւնը հէնց սկզբից այն գերդաստանի ձեռքն է անցնում, որից դուրս են գալիս քաջասիրտ և յաջողակ առաջնորդներ. կազմւում է մի ժառանգական հարստութիւն և միապետական իշխանութիւնը անզգալի կերպով հաստատութիւն է առնում: Ուրիշ բան է պատահում հովւական ու երկրագործական խաղաղ ժողովուրդների մէջ: Այստեղ առանձին գերդաստաններ միանում և ցեղական ընկերութիւններ են կազմում առանձին ցեղապետների պաշտպանութեան տակ, որոնց պարտքն է հովւել իրանց ցեղը և պաշտպանել նորա սեպհականութիւնն ու աշխատանքի պտուղը անիրաւութեան դէմ: Այստեղ արիւնակից գերդաստանները կամաց-կամաց ցեղական ընկերութիւններ կազմելով՝ գերդաստանի հօր իրաւունքներն էլ անցնում են ցեղապետին, և այսպիսով կազմւում է կալւածական կամ տանուտիրական կառավարութիւնը, որ հայոց էլ՝ իբրև հովւական ու երկրագործական ժողովրդի, սեպհական էր սկզբնական ժամանակներում: Մեր առաջին նահապետները մինչև Արամ ժողովուրդի համար ոչ այլ ինչ էին, եթէ ոչ հայրեր, որոնք խնամում էին իրանց ցեղը այնպէս՝ ինչպէս որ գերդաստանի հայրը հոգում է իւր որդոց պէտքերը, կամ ինչպէս այժմեան գիւղական կեանքում «տանուտէրը» կամ ծերը կառավարում է իւր գիւղը: Զանազանութիւնը միայն նորանումն էր, որ մեր նահապետների մէջը կար մէկը, որ ժառանգութեամբ ստանում էր ազգի ընդհանուր կառավարութիւնը և որի հովանաւորութեան տակ գտնւում էին միւս ցեղապետները: Այս

առանձնութիւնն ունէին Հայկից յետոյ ուղիղ գծով յաջորդող նահապետները, որոնց տանուտիրական իրաւունքների ընդհանրութիւնը հիմնւում էր ժառանգական սեպհականութեան վերայ, որով մէկը, իբրև գլուխ նահապետ, իւր ուզածին պէս կամ հին սովորութեան համեմատ բաժանում էր կալուածները արիւնակից ցեղերին։ Բայց այս գլխաւորութիւնը այնպէս անզգալի էր, որ երբեմն գլխաւոր տանուտէր նահապետը իւր հայրերից իրա ժառանգութեամբ ընկած երկիրը թողում և ուրիշ տեղեր էր գաղթում։ Սորանից երևում է, որ գլխաւոր նահապետի իրաւունքը շատ չէր զանազանւում երկրորդական նահապետների կամ ցեղապետների իրաւունքից։ Այս տանուտիրական խաղաղ ու պարզ կառավարութիւնը տևեց հայոց մէջ մինչև Արամ, որ բոլոր ցեղերը միացնելով՝ միապետական արգիւնաւոր հետևանքներ կունենար Հայաստանի համար, եթէ քաղաքական կեանքի այս բնական զարգացումը ընդհատուած չլինէր Ասորեստանի տիրապետութեամբ, որի շնորհիւ հայերը դարձեալ առանձնակ ցեղերին բաժանեցան։ Ուրիշ նահանգների նման, Հայաստանի հարաւային և արևմտեան մասերը կառավարւեցին բնիկ իշխանների ձեռքով, որոնց գլխաւոր պարտքն էր հարկը հաւաքել, մէկ մասը թագաւորի և միւս մասը տեղական պէտքերի համար։ Նոքա իրանց ձեռքի տակ ունէին բազմաթիւ պաշտօնեաներ, որոնք ցրւած էին երկրի գաւառներում։ Այս վերջինները ունէին իրանց տեղական կառավարութիւնները, որոնք առանձին խորհրդի միջնորդութեամբ հոգում էին ժողովրդի պէտքերը։ Տարակոյս չկայ որ այս վարչական ձևը առանց ազդեցութեան չմնաց հայոց կառավարութեան վերայ Հայկազանց թագաւորների ժամանակ, որոնց կառավարութեան եղանակի մասին, թէև ոչինչ չենք իմանում, բայց յայտնի է որ Տիգրան Երւանդեանի օրերից հաստատուն քաղաքային կարգեր սահմանւեցան հայոց մէջ»։

Դառնալով Արշակունեաց ժամանակին, նա շարունակում է.

«Արշակունեաց կառավարութեան ձևը, ինչպէս պարսից՝ այնպէս և հայոց երկրում, մէկ էր—ազնւապետական միապետութիւն։ Թագաւորը Հայաստանի տէր ու իշխանն էր և նորա իշխանութիւնը ժառանգական. բայց այդ միապետութիւնը իսկապէս անունով էր նայն, որովհետև թագաւորի իշխանութիւնը սահմանափակւում

էր մի ուրիշ ազնուապետական իշխանութեամբ, որ մեզանում նախարարութիւն էր կոչւում։

Նախարարութիւնը այնքան հին է որքան և Հայոց ազգութիւնը, և Վաղարշակ, հաստատելով այս ազնուապետական կաստան, վաւերացրեց այն կարգը՝ որին հնութիւնը և երկարատև սովորութիւնը օրէնքի զօրութիւն էր տուել։ Բղխելով այն տեղական իշխանութիւններից, որ Հայաստանի աշխարհագրական դիրքի շնորհիւ անյիշատակ ժամանակներից կազմել էին երկրի զանազան կողմերում, նախարարութիւնները հետզհետէ զարգացան ու զօրացան, և Հայոց հին թագաւորների բոլոր ջանքերը զուր եղան նուաճելու և կենդրոնական իշխանութեանը հպատակեցնելու նոցա։ Երբ Վաղարշակ սկսեց Հայաստանը բարեկարգել, ստիպուեցաւ օրինաւոր համարել այն հին կարգը՝ որ ըստ ինքեան թագաւորական իշխանութեան համար վտանգաւոր ու վնասակար էր, նորոգելով իւրաքանչիւր նախարարութեան իրաւունքները ժառանգութեամբ ստացած [illegible] ~~իրաւունքների~~ վրայ։ Նորա միակ աշխատութիւնն այն եղաւ, որ նախարարների վայելած արտօնութիւնների փոխարէն՝ մի քանի պարտաւորութիւններ դնէ նոցա վրայ և այսպիսով փոքր ի շատէ արքունիքի հետ կապէ նոցա։ Վաղարշակեան կարգադրութեամբ նախարարները (որոնք ընդհանուր անուամբ կոչւում էին «ազատ» և «ազատորեար» այսինքն ազնուական, հակառակ հասարակ ժողովրդեան, որ կոչւում էր անազատ), երկու գլխաւոր դասի էր բաժանւում, աւագ և կրտսեր նախարարներ։ Առաջինները զանազանւում էին կրտսերներից իրանց իրաւունքներով և թագաւորից ընդունում էին «բարձ և պատիւ աւագութեան», որով իրաւունք էին ստանում արքունիքում թագաւորի ներկայութեամբ նստել բարձի վրայ արեւելեան սովորութեամբ։ Բայց նոյն իսկ աւագ նախարարների մէջ մէկը միւսից նախապատիւ էր համարւում նայելով իւրաքանչիւրի ազդեցութեանը և երկրի ընդարձակութեանը. այս է որ մեր պատմագիրները անուանում են «առաջի գահ, երկրորդ գահ, երրորդ գահ և այլն։

քրիստոնէութեան շրջանում, թագաւորը երբեմն անհաւատարիմ և ապստամբ նախարարի կալուածներով վարձատրում էր իւր սիրելիներին։ Ս. Պալասանեանը, շարունակելով նոյն նիւթի մասին, յայտնում է նաև այն կարծիքը, իբրև թէ Արշակունիք սովորութիւն ունէին քաղաքներ շինելու և նոցա այդ սովորութիւնը նա վնասակար է համարում այն պատճառով, որ այդ ախտը ծանրանում էր երկրի տնտեսական վիճակի վերայ։

Ինճիճեանի կարծիքով մեր մէջ կառավարութիւնը միապետական էր, որովհետև «թագաւորք մեր ինքնօրէն իշխէին նաև ընդդէմ հաճոյից նախարարաց. օր. Տիրան, Արշակ, Պապ և այլն». և վերջապէս հարևան ազգերը միապետական կառավարութիւն ունէին։

Արքան ունէր սենեկապետ, հազարապետ, շահապ, «որոնք հաւատարիմք էին ՚ի վերայ ամենայն կարգաց կենաց թագաւորութեան ՚ի ներքոյ և արտաքոյ», որոնց հաւատացին «ամենայն գործատանն արքունի», որք վերակացու էին արքունի տեղեաց կամ ի վերայ շահու եկամտից արքայի»։ Կար թագադիրասպետը, արքային կառապետը, թիկնապահը, զեկուցանողը, քարտուղարը։ Կային՝ որսապետը, դահճապետը, շահ ախոռապետը։ Կային գրչունիք, նամակունիք, դրան երէցը և դրան եպիսկոպոսը։ «Ամեայն ՚ի դուռն արքային բնակեալ արք», անուանում էին «որեար դրան» «երկրորդ թագաւորութեան» դա փոխարքայութիւն էր և սկզբում Մուրացանների ձեռումն էր։ Տիրանը երկրորդական գահը տուաւ մի պատանու Անձևացեաց տոհմից։ Վերջի Արշակունեաց ժամանակ երկրորդ արքայն կոչւում էր մարդպետ, հայր իշխան։ Թագաւորի խորհրդանոցում մասնակցում էին չորս բարձրերէց գահերէց՝ բդեշխ անուամբ, որոնց զինւորական և կառավարութեան գործեր էր յանձնուած։ Չորս սահմանակալք կային, «որոնք կարգեալ էին ի զինւորական դասէն ի պահպանութիւն սահմանաց»։ Որոնք այս ինչ կամ այն ինչ աշխարհն էին պահում՝ կողմնապահ, կողմնակալ կամ կուսակալ էին անւանւում։ Ովքեր զանազան տեսակ արքունի գործերով էին պարապում՝ «գործակալք» էին անւանւում։

«Նախ» և «արար»՝ «նախկին» «յարարս» խօսքերից է Ինճիճեանը դուրս բերում նախարար խօսքը։ Նախարար—այսինքն նախակարգեալ իշխան. նա հա-

մեծանում է լատին բռէփեկտուս խօսքի հետ, որը ցոյց է տալիս յառաջագահութիւն և նախարարութիւն քան զայլս։ «Նախարարները յանուն գաւառի կոչէին, բայց կային և որ յանուն ցեղի կոչէին. վերջիններս աւելի բարձր էին, օր. իշխ. Վասպուրականի առ Աստղկայ կոչի իշխան Արծրունեաց։ Բագրատունիք, Մամիկոնեանք, Անգեղտուն և Մարդպետականք յանուն ցեղին կոչէին։

Նախարարք և նախարարութիւնք, նորա կարծիքով, ազատք և ազատութիւնք էլ էին կոչւում։ Իւրաքանչիւր տոհմի նախարարութեանց գլխաւորը, որպէս կոչւում էր «տէր» և «տանուտէր», նոյնպէս կոչւում էր և նահապետ։ Իշխան խօսքը թէև ընդհանուր է, բայց տիրապէս սեպհականուած էր այն տոհմին, որը «իշխէր և տիրէր երկրին իւրում»։ Օրինակ Սիւնի Բաբգէն, որին անուանեցին (Ղազար, էջ. 212) իշխան տէրութեան Սիւնեաց։ Աշոտ Արծրունեաց տան իշխանից յետոյ նորա իշխանական պետութիւնը (Ստ. Օրբ. 38) պայազատեց նորա որդին։ Սեպուհք ազնուական ծագումն ունէին, բայց գլխաւորները տոհմերի և երկրների տէրեր չէին։ Բուզանդացին և Մեսրոպը սատրապ խօսքը գաւառակալի տեղ են գործ ածում։ Յունաց և լատինացոց մէջ սատրապը նախարարի տեղն է։ Եւրոպայում ֆէօդալական տիրապետութիւնը սրով էր կանգնել։ Իսկ Հայաստանում, ասում է նա, նոյից յետոյ երբ մարդ չկար, առաջին բնակիչները տէրեր էին երկրին իրաւամբ և ոչ բռնութեամբ։ Ժառանգաբար այդ իրաւունքը անցնում էր որդոց։ Ուժեղ տոհմերը, որոնք ապագայում կարողացան զօրք պահել, նախարարներ կոչւեցան։ Գիւղացիք, որոնք գտանւում էին երկրումը, նոյն տէրանց ծառաներն էին։ Վաղարշակը նախարարութիւններն հաստատեց։ Տիգրանը իւրան օգնողներից, ցածր ազգերից, որոնք վաշտում անազգիք բայց անձամբ երևելիք էին, նոր նախարարութիւններ ստեղծեց։ Արշակ և Տիրան հետեւում էին ջնջել նախարարութիւնները։ Առհասարակ, Յովհաննէս կաթողիկոսի ասե-

չով, «Թագաւորը մեր պետք է իշխանք» հետեւում էին ոչնչացնել հին նախարարութիւնները եւ ստեղծել իրանց համար նոր պայազատութիւններ. Երկիրը սեփականութիւն էր նախարարների, վարըն որոյ եւ երբեմն նոցա տէր էին անւանում. Նախարարները դատաստանի իրաւունք ունէին, որովհետեւ չի երեւում որ թագաւորները խառնւէին Աղձնեաց, Վասպուրականի, Սիւնեաց եւ այլոց դատաստանում. Նոքա զօրքի վերայ էլ իշխանութիւն ունէին. միմեանց կամ օտարների հետ կարող էին կռւել: Թագաւորին պատերազմի ժամանակ [illegible] էին զօրք տալ, չտալը մեծ յանցանք էլ չէր: Նոքա իրանց երկիրներն էին պահում: Հարկ եւ հասս չտալը ապստամբութիւն էր համարւում:

Նախարարները աւագ եւ կրտսեր կարգերի էին բաժանւած: Աւագութիւնը գահով էր որոշւում: Զանազան մատենագիրներ աւագնակարգ գահի իշխանների թիւը փոքր ինչ տարբեր կերպով են որոշում: Սոս. Օրբելեանցի ասելով, նոցա թիւը 400-ի էր հասնում: Արշակի [illegible]ի ժամանակ նմանապէս նստում էին 400 իշխաններ, և [illegible] կարգը նորոգւեց ս. Ներսէսի հրամանով: Ոչ միայն նահապետները, այլ և գաւառները Հայոց աշխարհի ունէին իրանց նախարարութիւնները:

Ահա ինչ է գրում Էմինը նախարարութեան մասին:

Նախարար բառը կարծւում էր թէ կազմւած է երկու բառերից—նախ և արար, նախ—առաջին, արար—առնել (գործել) բայից, ուրեմն նախարար կը նշանակէր առաջին գործող կամ ներգործող, տէրութեան առաջին պաշտօնեայ: Այսպէս էին կոչւում Հին Հայաստանում այն հողերի տէրերն, որոնք պատկանում էին յայտնի մի ցեղի և անցնում ազգից ազգ: Նոցա իշխանութիւնը կամ պայազատութիւնը կոչւում էր նախարարութիւն: Նախարար բառը օտար լեզուներով թարգմանում էին սատրապ բառով, որի հին պարսկական ձևն է, ինչպէս հաւատացնում է Լասսէն (Ueber die Keilschriften der ersten und zveiten Gattung, էջ 18) խշատրապա, որ ծագում է խշատրա (թագաւոր) բառից: Ուրեմն խշատրապա, որպէս բարդ բառ, պիտի նշանակէր թագաւորական իշխանութեան «խնամատար» կամ «պաշտպան»: [illegible]ութեան ժայռի վերայ եղած սեպաձև արձանագրութե-

մէջ կարդում է չատրապատ, որին Լատէնի տուած նշանակութիւնն է տալիս։ Նախարարները բաժանւում էին աւագ և կրտսեր։ Աւագ նախարարներ համարւում էին նրքա, որոնք ծագում էին հայկեան նախահայր Հայկի ցեղից, կամ հայկական հին անկախ ցեղերի նահապետներից։ Կրտսեր համարւում էին նրքա, որոնց նահապետները եղել էին անյայտ մարդիկ, բայց յետոյ անձնական արժանաւորութիւններով հայ թագաւորներից ստացել էին նախարարութիւն և արքունի դիւանում որպէս նախարարներ էին նշանակւած։ Արքունի հանդէսների ժամանակ նրքա ունէին յատուկ տեղեր իրանց ցեղի աւագութեան և արժանաւորութեան համեմատ։ Սրանից է առաջ եկել հին մատենագիրների ոճը—ընդունել բարձ և պատիւ յարքայէ—ստանալ բարձ և պատիւ թագաւորից։ Մեծ շնորհ էր համարւում, երբ թագաւորը պարգևում էր մինին բարձ, այսինքն իրաւունք՝ նրքա ներկայութեամբ թեկ. ընկնելու։ Երևի այս սովորութիւնը կար Հայաստանում հնագոյն ցեղապետութեան ժամանակ ևս, որովհետև մեր այս հնագոյն պատմական յիշատակարանում յիշւած կան նախարար և նախարարութիւն բառերը։ Երբ Հայկի ցեղապետութիւնը վերջացաւ Հայաստանում 351 թ. Ք. ծ. առաջ և բարձրացաւ Հայկական գահի վերայ Արշակունի ցեղը 150 թ. Ք. ծ. առաջ, նախարարների յարաբերութիւնները դէպի թագաւորը և դէպի միմեանց նորից որոշւեցան նոր գահնակալի կամքով. և սա հարկաւոր էր, մանաւանդ որ Վաղարշակ բազմաթիւ նոր նախարարութիւններ հաստատեց, որոնց մասին առիթ կունենանք խօսելու իւր տեղում։ Նախարարութեան արժանաւորութիւնը պարգևւում էր երբեմն թագաւորին մատուցած ծառայութեան համար, և փոխադարձաբար զրկւում էին այս իշխանութիւնից նրքա, որոնք զայրացնում էին թագաւորին իրանց անհնազանդութեամբ, խռովութեամբ և ուրիշ գործերով։ Արշակունիների թագաւորութեան վերջում, 422 թ. Ք. ծ. յետոյ, անվերջ վէճեր սկսւեցան նախարարների մէջ, այնպէս որ Վաղարշակից հաստատւած նոցա տեղակալական կարգը խանգարւեց, և կրտսեր նախարարներից շատերն յաղթեցին առաջներին։ Այս անկարգութիւնն առաւել մեծացաւ, երբ Հայաստանը բաժանւեց Թէոդոսիս կրտսերի ժա-
՝ 428 թ.), երկու մաս—Պարսկական և Յունական։

Այն ժամանակ նախարարները, իրանց թագաւորի դէմ ամենափոքր անբաւականութիւն ունենալուն պէս, անցնում էին Պարսկական Հայաստանից Յունական Հայաստան։ Սրա հետևանքը լինում էր այն, որ այս նախարարների անունները ջնջւում էին տեղակալական մատեաններից և ուրիշ նորերը նշանակւում էին նոցա տեղ։ Մանաւանդ առաւել յաճախ էին պատահում այս զրկանքները Պարսկական Հայաստանում։ Պարսկաստանի տիրապետները, Սասանեանները, վիրաւորում էին յաճախ հայկական նախարարների հպարտութեան և արժանաւորութեան զգացմունքը, մանաւանդ ցեղական նախարարներին, որոնք անբաւականութեամբ էին նայում իրանց փոխարինող նորընտիր նախարարների վերայ։ Պարսկաստանում Շապուհի դրանը 420 թ. արքունական սեղանին նոյն երևոյթներն էին կրկնւում, ինչ որ նկարագրում է ռուս հեղինակ Կոտոշիխինը իւր աշխատութեան մէջ (Россія въ царствованіи Алексѣя Михайловича, Петербургъ, 1840 г., գլ. դ., եր. 15 և 36)։

Սիւնիքի հին ազատական տէրը Անդոկ, որ նախարարների մէջ միշտ առաջին տեղերից մինն ունէր, Շապուհի կարգադրութեամբ, արքունի սեղանին 14-րդ տեղը պիտի նստէր։ Բոլոր ճաշի ժամանակ Անդոկ ձեռ չտուեց ոչ մի կերակրին և այնպէս սաստիկ վիրաւորուել էր թագաւորից հասած այս անպատուութիւնից, որ երբ իր երկիրը վերադարձաւ, ապստամբեց Շապուհի դէմ, անցաւ Յունական Հայաստան և շատ տարիներ չէր դադարում Պարսկաստանը իւր յարձակմունքներով աւերելուց (Մով. Կաղանկատ. Պատ. Մ. Բ. գլ. ա.)։ Այսպիսի դիպուածներ յաճախ էին պատահում։

## II

*Հայկազանց շրջանից մեր առարկային վերաբերեալ մեզ հասած տեղեկութիւնների մասին։—Ցեղական կազմակերպութեան գոյութիւնը Հայկազանց մէջ։—Նախագիտելիք։ Եւրոպական գիտնականների փորձերը ցեղական կազմակերպութեան մասին առհասարակ։—Ընտանիք, ծնունդ կամ տուն և ցեղ։—Ինչպէս էին ընտանեկան հիմունքները, սեփականութեան և այլ տեսակ իրաւունքները ցեղերի մէջ։—Բարեկամութեան տեսակները։ Ինչպէս էր փոփոխւում ընտանեկան հիմքը։—Մայրական ընտանիք։—Կլան։—Ազնուականների առաջ գալը։—Նւաճած ցեղեր։*

Հողային և անձնական իրաւունքների մասին Հայկազանց ժամանակաշրջանից մեզ շատ քիչ տեղեկութիւններ են հասել, հա-

ածների հաւաստիութեան մասին էլ կարծիքները շատ տարբեր են։ Հաւանական է միայն, որ այդ տեսակ տեղեկութիւններից ճշմարտագոյնները նրանք են, որոնք վերաբերում են մեր առարկային, որովհետեւ ամենայն ժամանակ գիւղերի, շէնի, սեպհականութեան, դաստակերտների, դաստակարգերի, ցեղերի և ազնուականների վերաբերեալ իրաւունքների իրարանցումը յարուցանում էին անթիւ վէճեր, առաջ էին բերում դաշնադրութիւններ և այլն։

Հետեւապէս ապագայ սերունդների ձեռն էին անցնում վճիռներ, կալուածագրեր և այլ գրի առած յիշատակարաններ, նաև բերանացի աւանդութիւններ, որոնք ոչ միայն դիւանատները, այլ և անձնաւորութիւնները և ցեղերը պիտի ամենայն զգուշութեամբ պահէին իրանց իրաւունքները հաստատելու համար։ Նոյն ինքը Խորենացին իր պատմութիւնը գրելու ժամանակ օգուտ է քաղել այդ տեսակ աղբիւրներից, ինչպէս ինքն է ասում։ «Եւ գիր Պարսից և Յունաց որովք այժմս գիւղից և գաւառաց եւս և իւրաքանչիւր տանց առանձնականութեանց, և հանուրց հակառակութեանց և դաշանց այժմ առ մեզ գտանին անբաւ գրուցաց մատեանք, մանաւանդ որ ի սեպհական ազատութեան պայազատութիւնս։ (Խորենացի, էջ 7) [1]։

Պատմաբաններին և քննադատութեանը կը վերաբերի պարզել այդ տեսակ տեղեկութիւնների որ աստիճան հաւաստի լինելը։ Մենք մեր պարտքն ենք համարում լռել այդ մասին, միայն եթէ այդ տեղեկութիւնները մէկը միւսին հակասեն, մենք կը հիմնւենք նրանց վերայ, որոնք մեր կարծիքով աւելի ճշմարտագոյն են։ Գործին մենք այդ տեսակ ենք վերաբերւում նախ, որ քննադատու-

---

[1]) Մովսէս Խորենացու Հայկական պատմութիւնը աշխարհաբար թարգմանել է յարգելի Խորէն ծայրագոյն վարդապետ Ստեփանէն։ Այս թարգմանութիւնից օգուտ քաղելով, մեր աշխատութեան մէջ էլ առաջ կը բերենք աշխարհաբար լեզւով Խորենացուց հանած այն հատուածները, որոնց վերայ ընթերցողի ուշադրութիւնը կը դարձնենք։ Ահա և այն հատուածի թարգմանութիւնը։ «Կային պարսկական և յունական տառեր և այս տառերով գրուած կան մեզանում բազմաթիւ գրքեր, որոնք պարունակում են զանազան գիւղերի, գաւառների և առանձին տների վէճեր և դաշինք և մանաւանդ ցեղական ազնուականութեան ժառանգութեան գործերը» (Խոր. ծ. վ. Ս. եր. 8)։

թիւնը մեզանում դեռ զարգացած չէ, իսկ միւս կողմից մեր հին մատենագիրները նկարագրում են թէ իրանց ժամանակակից անցքերը, կազմակերպութիւնը և իրաւունքները, որոնց ճշմարտութեան մասին կասկածներ քիչ կան, և թէ իրանցից առաջ գոյութիւն ունեցած ժողովրդի կազմակերպութիւնը և իրաւունքները, որոնք ոչ միայն դարեր, այլ շատ անգամ հազար տարիներ անփոփոխ և կամ քիչ փոփոխութեամբ էին պահպանւած ժողովրդի մէջ, հասնելով մինչև պատմաբանների օրերը։

Օգուտ քաղելով մեզ հասած տեղեկութիւններից, տեսնում ենք աչքի ընկնող մի էական կէտ, որի վրայ հիմնւած էր հայկազանց կեանքը, և որի գոյութիւնը խոստովանում են մեր բոլոր յայտնի գրողները՝—դա ցեղական կազմակերպութիւնն էր։

Վասնորոյ մեր հետազօտութեան հէնց առաջի քայլափոխում ստիպւած ենք պարզաբանել այդ հիմնարկութեան էութիւնը, օգուտ քաղելով եւրոպական գիտնականների հետազօտութիւններից. և այդ պատճառով թող ների մեզ ընթերցողը, որ շեղւելով մեր բուն առարկայից, առաջ ենք բերում այստեղ իբրև նախագիտելիք մի ընդհանուր տեսութիւն ցեղական կազմակերպութեան մասին։

Մէն գիտնականի ասելով, հնագոյն նահապետական ընտանիքների միաւորութիւնից ծագում էր ծնունդը (родъ) կամ տունը, ծնունդների միաւորութիւններից՝ ցեղը, ցեղերի միաւորութիւնից՝ ազգը։ Գիտնականները հնագոյն մարդու ընտանիքի վրայ շատ կարծիքներ են յայտնում։

Ոմանք ասում են իբրև թէ դա հիմնւած է եղել համայնականութեան (комунальный бракъ) սկզբունքի վրայ, ոմանք՝ հետերականութեան վրայ (այսինքն երբ տղամարդը հեշտութեամբ կարող էր թողնել մի կին և վերցնել մի ուրիշը) և այլն։

Հաւանական կարծիքը այն է, որ կային այր և կնոջ մէջ լոկ բարեկամութեան կամ ընկերութեան բնաւորութիւն կրող սեռական կապեր, որոնք միմեանց յօժարութեամբ կամ այլ պատճառներով ինչպէս հեշտ կարող էին հաստատւել, այնպէս էլ և քանդւել։ Այնու ամենայնիւ այդպիսի ընտանիքների մէջ տիրում էր միակնութեան սկզբունքը, թէև գիտնականները չեն հերքում, որ բազմակնութիւնն էլ կարող էր տեղի ունենալ։ Այդ կարծիքը մա-

սամբ հաստատում է նորանով, որ կային մահմեդականութիւն ըն-
դունելուց առաջ միակնութեամբ (մոնոգամիա) ապրող ազգեր, որոնց
համար նոր կրօնքով թոյլատրուած բազմակնութիւնը խորթ էր
միայն ամենաբարձր դասակարգի մէջ։ Գիտնականները հնագոյն
մարդի կեցութիւնը համեմատելով ներկայիս վայրենի ազգերի հետ,
եզրակացնում են, որ հնումը այժմեան հասկացողութեամբ ընտա-
նիք գոյութիւն չունէր։ Կայքը, կարողութիւնը, որդիքը և այլն
ցեղին էին պատկանում։ Անհատի վիրաւորանքի փոխարէն ցեղն էր
վրէժառու լինում, պատիժը ցեղին էր վերաբերում։ Կային ցեղեր,
որոնց մէջ որսը իրան սեպհականացնող անդամը գող էր համար-
ւում, կամ պարտատէրը կարող էր ոչ միայն պարտապանից, այլ
ցեղի իւրաքանչիւր անդամից իր պարտքը պահանջել։ Սպանողից
վրէժը ցեղն էր առնում, դորա տուգանքը ցեղին էր հասնում։
Բարեկամութիւնը ևս դրանց մէջ ցեղովի էր՝ այսինքն սերնդաբար։
Իւրաքանչիւր սերնդի անդամները միմեանց եղբայրներ և քոյրեր
էին համարւում և այլն։ Մորգէն գիտնականը ասում է, որ իր
հետազօտած ներկայիս վայրենի ցեղերի մէջ տեղի էին ունենում
բարեկամութեան հետևեալ տեսակները՝ պապ, նան, եղբայր,
քոյր, ծնողք, որդիք և թոռներ և դրանք չէին հասկանում բա-
րեկամութեան այլ տեսակները, օրինակ հօրաքոյր, մօրաքոյր,
քենի, քեռի և այլն։ Դրանց մէջ իբրև թէ պապիս և նանիս
եղբայրները և քոյրերը իմ վերաբերեալ պապեր և նաներ էին
համարւում։ Ծնողներիս եղբայրները և քոյրերը՝ իմ ծնողներս, այ-
սինքն իմ հայրերս և մայրերս էին համարւում և այլն։

Անհատը իբրև հայր կամ մայր, այսինքն իբրև ծնող չէր
որոշւում ուրիշներից։ Շարունակելով իրանց հետազօտութիւնները,
գիտնականները ասում են, որ սկզբում սեռական յարաբերութիւն-
ները միևնոյն ցեղի անդամների միջումն էր միայն կապւում (էն-
դոգամիա)։ Հետզհետէ ցեղերը կռուելով գերիներ էին վերցնում մէկը
միւսից։ Գերի կինը ընդհանուր ցեղի սեպհականութիւնն էին դարձ-
նում։ Այդպիսով մտնում էր օտար ցեղերից կին ունենալու սովո-
րութիւնը (էկզոգամիա)։ Ապագայում ցեղի մէջ ուժեղ անդամը այդ
գերի բերած կանանցից իրան թւով աւելի էր յատկացնում և այդ-
պիսով մտնում էր բազմակնութիւնը և միևնոյն ժամանակ կինը

իրան յառաջացնողի անհատականութիւնն էր դառնում։ Ահա բազմակնութեան (պոլիգամիա) և յափշտակութեան վերայ հիմնուած ընտանիքի սկզբունքը։

Միևնոյն ժամանակ կարող էր գոյութիւն ունենալ և նախնական, այսինքն հասարակականութեան հիմունքով կին ունենալու սովորութիւնը, մանաւանդ իշխող ցեղերում, որովհետև դոքա միմեանցից կին առնելով թէ իշխանութիւնը և թէ հարստութիւնը իրանց մէջն էին պահում։ Կինը անհատականութիւն դառնալուց յետոյ սկսում է ծագել, մօտաւորապէս մեր հասկացողութեամբ, ընտանիքը, միայն ստիպման, մասամբ բազմակնութեան, և ոչ յօժարականութեան վրայ հաստատած (принудительный бракъ)։

Այս դէպքում, եթէ կինը մարդուն չի դուր գալիս, նա մի նորն է բերում, իսկ նախկինը պահում է իբրև աղախին։ Յափշտակութեան և ոյժի վերայ հիմնուած ընտանիքը ցեղի մէջ գոյութիւն ունենալուց յետոյ՝ ցեղի կազմակերպութիւնը կերպարանափոխւում է։ Ցեղերի մէջ մուտք են գործում զանազան ծագում ունեցող կանայք, և որովհետև ցեղերում շատ անգամ որդոց հայրը յայտնի չէ լինում կամ դրանց դաստիարակը մայրն է լինում, որդիքը իրանց յատկութեամբ մայրական ցեղերին աւելի մօտ են լինում։

Այդտեղ սկզբում ընտանիքը աւելի մայրական կարելի է համարել, որովհետև օտարածին կանանցից ծագածները իրանց մօտ են համարում մօր քան թէ հօր ցեղին։ Ցեղի կանանցից առաջացածները նոյն ցեղի կլանն են կազմում, իսկ օտարածին կանանցից եղածները կազմում են իրանց մօր ցեղի անուամբ կլանները։ Սկզբում օտար կլանների թիւը քիչ էր՝ նոքա ստորադրեալ էին, բայց հետզհետէ դրանց թիւն և ոյժը աւելանալով, իրաւունքներն էլ են աւելանում։ Կլաններում տղամարդկանց մէջ հաւասարութիւն էր տիրում։ Դրանք կռիւ գնալու ժամանակ միաւորւում էին միմեանց հետ։ Կլանն էր լուծում իր անհատին հասցրած վիրաւորանքը, կամ նրա սպանւելու պատճառով նշանակած տուգանքը կլանին էր հասնում և կամ ամբողջ կլանն էր այդ սպանութեան վրէժը հանում։ Երբ ցեղերի միջում գոյացած կլանների շահերը սկսում էին միմեանց հակասել, ցեղի միակերպութիւնը սկսում էր ոչնչա-

նալ և կլանները միմեանցից ջոկւում էին։ Բայց երկու տեսակ ցեղեր կային։ Առաջիններում սովորութիւն էր կին առնել միայն օտար ցեղերից, իսկ երկրորդ տեսակ ցեղերում սովորութիւն էր կին առնել թէ իրանց միջից և թէ օտար ցեղերից։ Վերջին դէպքում հարազատ կանանցից ծագածները աւելի էին արտօնութիւն վայելում, քան օտարածին կանանցից ծագածները։ Առաջիններից էին ցեղապետները և ծնունդների գլուխ կանգնածները։ Սրանցից էին ազնուականները ծագում, միայն ցեղի թէ հարազատ և թէ օտարածին կանանցից ծագածները ցեղի ունեցածի վրայ համահաւասար իրաւունք էին վայելում։ Այդ հաւասար իրաւունքից զուրկ էին միայն նուաճուած ցեղերը, որոնք ստրուկների և կամ կրէպոստնոյների շարքումն էին։ Այս նախագիտելիքից յետոյ դառնանք Հայկազանց ցեղական կազմակերպութեանը։

## III

*Հայկազունք իբրև ցեղ, որդի, որդոց որդի, ուստր, դուստր։ Բարեկամութեան տեսակները։ Ձեռքի տակ եղածները—ընդոծին, աղխ, ընտանեկան և ամուսնական յարաբերութիւնները—կինը, ընտանին։ Աղխը Արշակունեաց ժամանակ։ Ամփոփումն։*

Մեր երկրում առաջին գաղթականութիւնը հաստատողների մասին Խորենացին գրում է՝ Տարբանը եկաւ «երեսուն ուստերօք և հնգետասան դստերօք և նոցին արամբք»... (Խ. եր. 24) [1]), Հայկը մտաւ Արարատեան երկիրը... «հանդերձ որդւովք իւրովք և դստերօք և որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք՝ թւով իբրև երեքհարիւր, և այլովք ընդոծնօք, և եկօք յարեցելովք ի նա, և բոլոր աղխիւ (Խոր. էջ. 32, 33) [2])։

Այստեղ Խորենացին գործ է ածում «որդի», «ուստր», «դուստր», «որդւոց որդի», «ընդոծին» և «աղխ» խօսքերը, որոնցից մի քանիսը ներկայումս չեն գործածւում կամ գործածւում են այլ մտքով

---

[1]) «Երեսուն որդիներով և տասնեհինգ դուստրներով և սոցա տղամարդիկներով (Խ. ծ. վ. Ստեփանէ, եր. 22)։

[2]) Հայկը եկաւ «բոլոր իւր որդիներով, դուստրներով և որդիների որդիներով, որոնք զօրեղ մարդիկ էին մօտ երեք հարիւր մարդ, իւր սպասաւորներով և ուրիշ զանազան մարդիկներով, որոնք միացել էին նորան, նոյնպէս և բոլոր տուն ու տեղով» (Խ. ծ. վ. Ս. եր. 29)։

քան հնումը, և թէ նոյն առարկաներն են բացատրում, բայց դրանց արէշ, հեռահեռէ կազմակերպուած տեսակները: Առհասարակ ժամանակի ընթացքում հասարակական կազմակերպութիւնը, ժողովրդի կեցութիւնը և այլն անդադար ենթարկւում են փոփոխութեան և մեզ՝ ներկայումս ապրողների համար անհասկանալի է դառնում հնութիւնը: Մեզ անբացատրելի էր թւում Խորենացու խօսքերը թէ Հայկի ընտանիքի մի մասը բաղկացած էր 300 հոգուց, կամ նորա բոլոր թոռները հասակ առած մարդիկ էին: Մինչդեռ այժմեան ընտանիքները սակաւաթիւ անդամներից են բաղկացած լինում, թոռները մեծահասակ չեն լինում և այլն: Ուսումնասիրութիւնը լուսաբանում է այդ խաւարը:

Խորենացու ասելով Հայկազանց մէջ կային «որդւոց որդիք», որոնք հասակ առածներ, այսինքն տղամարդիկ էին:

Նոյնպէս դուստր խօսքը վերաբերում էր թէ իրանցից ծագած աղջկանց և թէ իրանց կնիկ մարդկանց: Այս եզրակացութեանը մենք գալիս ենք նորա հետևեալ հատուածներից՝ «և որդւոց որդւոց, արամբք զօրաւորօք», որը թարգմանւում է «և որդիների որդիներով, որոնք զօրեղ մարդիկ էին»: Նմանապէս ասել, թէ Տարբանը եկաւ 15 դստերօք և նոցին արամբք» նշանակում է, որ այդ դուստրները այդ տղամարդկանց կանայքն էին: Այս հանգամանքը մեզ ցոյց է տալիս, որ նոքա իրանց միջից կին առնելու սովորութիւնն ունէին: Ուրեմն Հայկի ժամանակ տիրապետում էր էնդոգամիան. մանաւանդ Հայկի ցեղի մէջ մենք միւս ազգակցական անունների թւումը կին-անուն չենք տեսնում, որ փոխարինւած պէտք է համարել դուստր անունով. ուրեմն իրանք իրանց միջից կին առնելու սովորութիւն ունէին և դուստրը ընտանին էր համարւում շնորհիւ այն յարաբերութեան, որի մասին վերջեցինք նախագիտելիքում:

Այսպիսի սովորութիւն ցեղական կազմակերպութեամբ ապրող ժողովրդներին էր յատուկ: Նմանապէս նոյն ցեղական կազմակերպութեան մէջ միայն կարող է լինել հասակն առած որդւոց որդիների սերունդը: Երեխայոց կամ տղայոց վերաբերեալ Խորենացին «դուստր» խօսքն է գործ ածում: Հետևապէս մենք չենք սխալւիլ, եթէ ասենք, որ Տարբանեանք և Հայկազունք սերունդների էին

բաժանուած Հայկին որդիներանց, որդւոց որդիներանց սերունդները. Հայկին ցեղից ծագում ունեցող կանայք, որոնք դուստր անուամբ էին յայտնի։ Քննելով դրանց կազմակերպութիւնը, նախ և առաջ կը տեսնենք, որ Տորքանի 15 դուստրները իրանց 15 աղամարդկանց հետ միացած ընտանիքներ լինելով՝ մի տուն կամ ծնունդ և մինչև անգամ մի ցեղ էին և դրանց ընտանեկան հիմքը համայնականութեան և կամ հետերականութեան սկզբունքի վրայ էր հաստատուած։

Հայկայ որդոց, որդիներանց որդոց և դստերաց թիւը 300-ի հասնելով, հաւանական է, որ դոքա ցեղ և մինչև անգամ ցեղեր լինէին, որովհետև երբ սոքա տեղաւորւեցան երկրի զանազան կողմերում, ասում է Խորենացին... «Այս Հայկ... նախնի Հայաստանեայց և այս ազգք նորա և ծնունդք և աշխարհ բնակութեան» (Խոր. եր. 43) [1]։ Հայկազունք ծնունդների բաժանւելով, դրանց ներքին կապը, ինչպէս կը տեսնենք, չքանդւեց։ Ընդհանրապէս Հայկը և նրանից ուղիղ գծով յաջորդողները առաջնորդում էին բովանդակ ազգը։ Բաժանւելուց յետոյ էլ սրանց մէջ քաղաքականութիւնը ցեղերին յատուկ եղանակով էր լինում։ Կադմոսը թոռներին կամ որդւոց որդիներանց սերնդին էր պատկանում. Արմենակը որդիներից էր և սրան սերնդակիցները իւր եղբայրներն էին։ Այդպէս կարելի է կարծել Խորենացու այն հատուածից թէ ինչպէս Հայկը Բելի հետ կռիւ սկսելուց առաջ՝ կարգադրում էր իւր զօրքը։ «Կարգէ Արմենակ երկու եղբարբ ընդ աջմէ և զԿադմոս և զայլս երկուս յորդւոց իւրոց ի ձախմէ...» (Խոր. եր. 46) [2]։

Սրանց մէջ կային և հայրեր, որովհետև Հայկը իւր երկրորդ իջևանած տեղը անւանեց «Հարք»։ Այս խօսքը Խորենացին բացատրում է ասելով «այսինքն աստէն բնակեալքս ազգի տանն Թորգոմայ (Խ. 33)։ Խ. Ծ. Վ. Ստեփանէն այս տողերը թարգմանել է «Հարք», այսինքն այստեղ բնակւողները Թորգոմեան ազգի հայրերն են» (Խոր. Ծ. Վ. Ստ. եր. 30)։

---

[1]) Այս է... Հայկը... Հայերի նախնին. ահա նրա ազգերը, ծնունդները և բնակութեան աշխարհը (Խ. Ծ. Վ. Ս. եր. 38)։

[2]) Կանգնեցնում է աջ կողմում Արմենակին երկու եղբայրներով և ձախ կողմում Կադմոսին և իւր որդիներից երկուսին (Խ. Ծ. Վ. Ս. եր. 32)։

Սոյն «Հարքում», այսինքն հայրերի բնակութեան տեղում, Արմենակը, Հայկին յաջորդելուց և հայրերի շարքը ընկնելուց յետոյ, թողնում է բնակւելու իւր Խոռ և Մանաւազ եղբայրներին։ Ուրեմն հասկանալի է, որ սրանք հայրեր էին և միմեանց եղբայրներ էին անւանում։ Հետևապէս հայրերի սերնդակիցները միմեանց եղբայրներ էին անւանում և թոռներ ունէին։ Յայտնի բան է, որ հայրերը ունենալով թոռներ, նոցա պապերն էին։ Որդիքը ծնողներն էին։ Պապ լինելուց յետոյ, կը լինէր և նանը։ Եղբայրը լինելուց յետոյ, կը լինէր և քոյրը։ Այսպիսով մենք տեսնում ենք, որ Հայկազանց մէջ կային բարեկամութեան այն տեսակները, որոնք ցեղերին յատուկ են՝ պապ, նան, եղբայր, քոյր, ծնողք, որդի, որդւոց որդի։ Յետին ժամանակներում ծագումն առնող անուններ չեն յիշւում Խորենացու մէջ։

Դառնանք ընտանեկան և ամուսնական յարաբերութեանը։

Առաջին Հայկազունք՝ ի հարկէ, ինչպէս իրանց հաւանները, ցեղերին յատուկ գերի բերելու սովորութիւնից ազատ չէին, որովհետև Հայկը և Գեղամը գիւղ, դաստակերտ և ձեռակերտ շինեցին, ուր, ինչպէս կը տեսնենք, ըստ մեծի մասին պատկանելի մարդն էր նստում։ Գերիներ բերելուց յետոյ Հայկազունք, ինչպէս տեսանք նախագիտելիքներից, ուրիշների պէս էլ չէին բաւականանալ իրանց դուստրներով, այլ գերի կանայք ամբողջ ցեղի սեփականութիւնը կը դարձնէին և իրանց ընտանեկան յարաբերութեանց մէջ ոյժն և յափշտակութիւնը հիմք կը դարձնէին։

Հէնց այդպէս էլ էր Հայկազանց մէջ. գոցանում կար ընդհանուր ցեղին պատկանող աղխը և հարազատները առաւելութիւն էին վայելում խառն արիւն ունեցող ցեղակիցներին վերաբերեալ։ Եւ ուղիղ. մենք արդէն առաջ բերինք Խորենացու այն հատուածը, ուր նա ասում է, որ Հայկը եկաւ Արարատեան երկիրը «որդիներով, դստրներով, որդիների որդիներով» և բոլոր գաղխիւ»։ Եւ մենք այն եզրակացութեան եկանք, որ առաջինները հասակ առածներն էին, հետևապէս աղխը կը վերաբերւէր մանր երեխաներին, գերի կանանց և ցեղի միւս պատկանելիքներին։

Եւ ինչպէս տեսանք նախագիտելիքներից, գերի բերած կանանցից ծագածները՝ ցեղի մէջ «ձեռաց տակ» էին գտնւում, կամ հարա-

զատ արիւն ունեցողների առաջնորդութեան տակ էին. նոյնը մենք տեսնում ենք Հայկազանց մէջ։

Ցեղի ոգին, նոյն իսկ ցեղը կազմում էին պատերազմ դուրս եկողները. այդ պատճառով ցեղ և գունդ խօսքերը կարծես Խորենացին մի նշանակութեամբ է գործածում։ Նա ասում է, օրինակ... «զցեղս զայս մեծ և անուանի... զգունդս Սիսականն» (Խ. 112) որ կընշանակէ —այս մեծ և անուանի ցեղը, այսինքն Սիսական գունդը։ Հայկը Բէլի հետ կռիւ սկսելուց առաջ «հաւաքէ զորդիս իւր և զթոռունս, արս քաջս և աղեղնաւորս, թուով յոյժ նուազունս, և զայլ որ ընդ իւրով ձեռամբ... և կոչեցեալ զզօրս իւր ասէ ցնոսա... զի կամ մեռցուք և աղխ մեր ի ծառայութիւն Բէլայ կայցէ, կամ... մեք եղիցուք յաղթութեան ստացեալք (Խ. 35) [1]։

Այս տողերը մեզ ցոյց են տալիս, որ նոյն իսկ պատերազմ դուրս եկողների մէջ կար որդիների և որդւոց որդիների գունդը, կային և ձեռքի տակ եղածների գունդը. Ուրիշ խօսքով ցեղի մէջ կային որդիք և որդւոց որդիք, կային և ձեռքի տակ եղածները, որոնք անտարակոյս գերի կանանցից ծագածները պիտի լինէին։

Սոյն տեսակ մարդիկ էին ընդոծինները, որոնք ցեղից էին ծագում և ձեռքի տակ եղածների շարքումն էին։ Գոնէ Հայկը, ինչպէս տեսնում ենք, Կադմոսին պարգևեց «յիւրոց ընդոծնաց արս անուանիս» (Խ. 38)։ Ուրեմն ընդոծինները և «ձեռքի տակ եղածները» պատերազմի էլ էին դուրս գալիս, անուանի մարդիկ էլ էին, ցեղից էլ ծագումն ունէին, բայց միայն հարազատ արիւն ունեցողների հաւասար իրաւունք չէին վայելում։ Հետևապէս պէտք է ընդունել, որ Հայկազանց մէջ կար թէ իրանց միջից կին առնելու սովորութիւնը (էնդոգամիա) և թէ օտարներից գերի կանայք բերելու սովորութիւնը (էկզոգամիա). իրանց դուստրներից որդիները և որդիների որդիներն էին ծագում, որոնք առաւելութիւն էին վայելում. իսկ օտար կանան-

[1]) «Հաւաքում է իւր որդիներին և թոռներին, քաջ և աղեղնաւոր մարդիկներին, որ շատ փոքր էին թւով, և իւր ձեռքի տակ եղածներին և դիմելով զօրքին ասում է. «կամ մեռնենք և մեր բոլոր գերդաստանը Բէլի ծառայութեան տակ մնայ կամ յաղթութիւնը ստանանք (Խորէն Ծ. մ. Աբր. եր. 21).

ցից ընդոծինններն էին ծագում, որոնք, ինչպէս Խորենացին պատմում է, «ընդ ձեռամբ տակ էին»։

Հետզհետէ ուժեղները սեպհականացնում են այդ սորուկ կա-նանցից, որոնք դրանց կանայքն են անուանւում, մնացածները էլ ընդհանուրին էին պատկանում և աղխ խօսքով էին որոշւում։ Առ-հասարակ սորուկ կանայք աղխի մէջ էին և աղախին խօսքնէլ թերևս և աղջիկ խօսքը այստեղից են ծագում։ Մեր մատենագիր-ները բազմակնութեան շրջանին վերաբերեալ են գործ ածում կին և աղջիկ խօսքերը, որպէս այս երևում է Խորենացու հետևեալ հատ-ւածից»... «իսկ զՄնուշ զառաջին կինն Աժդահակայ և զբազումս ի սերմանէ Աժդահակայ աղջկունս հանդերձ պատանեկօք և այլ բա-զում գերիօք» (խ. 38)...։ Սորանից առաջ կանայք դուստր և աղխ խօսքերով էին որոշւած։

Ուրեմն կինը վերաբերում էր պատկանելութիւն դարձրած աղջկան։

Բազմակնութեան շրջանը մեր մէջ տևողական էր։ Առհասարակ ոչ միայն Հայկազեանց, այլ և Արշակունեանց ժամանակ ցեղական սովորութիւնները ոչնչացած չէին։ Այդ սովորութիւններից աչքի էին ընկնում՝ բազմակնութիւնը և իրանց մերձաւորներից կին առնելու սովորութիւնը, որ իրանց իրաւունքները և պատւութիւն-ները իրանց ձեռքին մնան։

Արտաշէսը բազմաթիւ կանայք ունէր. աչքի էր ընկնում դա-րա Մանդու անուանեալ հարճը իր գեղեցկութեամբ։ Նախարարների մէջ բազմակնութիւն կար։ Արշակը ունէր երկու կին՝ Փառանձեմ և Ողոմպէ։ Մուշեղ սպարապետը ձերբակալեց Աղձնեաց բդեշխին և նորա կանանց և որդւոց կոտորեց (Փաւ. եր. 178)։ Տիրան թագա-ւորի կանայք գերի էին ընկած և պարսից թագաւորը դրանց միւս գերիների հետ գերադարձ արաւ (Փաւ. եր. 46)։ Սուրբ Սահակը խիստ օրէնքներ հաստատեց վերոյիշեալ ցեղական սովորութիւնների դէմ, թէև արմատախիլ անել չկարողացաւ։ Սուրբ Ներսէսը հրա-մայում էր «չի լինիցին յամուսնութեան օրինաւորք. մի առնել և մի տալ թերել իւրեանց ամուսնութիւն ընդալ կողմանց և փախչել աւելի ՚ի մերձաւոր և յազգին տոհմակից խառնակութեամբ ամուսնութենէն. և մանաւանդ ի մերձաւորական ՚ի նուաց և որ զամ մի այսմ նման լեալ էր ինչ (Փաւ. եր. 64 ~~14~~)։

Խորենացու բացատրութիւնից երևում է, որ տոհմակիցները հետևում էին միմեանց հետ ամուսնական կապեր հաստատելու, որ իրանց ունեցածը և իշխանութիւնը իրանց ձեռքից չթողնեն։ Ահա և նորա բուն խօսքերը։ «Եւ զերկուս զայսոսիկ յազգաց նախարարացն բառնայ․ մի՛ զմերձաւորաց խնամութիւն, զոր վասն ագահելոյ հայրենական ազատութեանն առնէին (Խոր. Եր. 306) [1])։ «Իսկ յետ մահուան նորա (Ներսէսի), ասում է Փաւստոս (երես 93), այնու հետև ամենայն մարդ առին հրաման համարձակութեամբ 'ի թագաւորէն, թողուլ զկանայս զամուսինս իւրեանց. էր զի մի այր տասն կին փոխէր. և առհասարակ յանօրէնութիւն դարձան միանգամայն»։

Բերած հատուածութիւններն էլ կարծում ենք բաւականաչափ ապացուցանում են որ մեր մէջ կար բազմակնութեան սովորութիւնը, որը թէև հեթանոսական սկզբունքը բոլորովին չոչնչացրեց, բայց հիմնովին փոխեց քրիստոնեական կարգ կանոնները։

Դորանից առաջ դուստրը՝ ինչպէս հարս կարող էր ը ն տ ա ն ի դառնալ, այնպէս էլ հարս կարող էր բաժանել մարդուց։ Աւելին կար ը ն տ ա ն ի և ոչ ընտանիք, որը չկար և այն ժամանակ, երբ գերի կանանց բերելու սովորութիւնը մուտք գործեց։ Ընտանիք խօսքը բազմակնութեան է վերաբերում։ Ցանկալի է, որ հէնց այդ շրջանին է վերաբերում Խորենացու ասածը՝ որ Կամսարը ամենայն ընտանեօք իւրովք և ամենայն գայ՝ առ Տրդատ մեր թագաւոր (Խոր. Եր. 258)։ Խ. Ծ. վ. Մանէփանէն այս տողերը թարգմանել է «Կամսարը բոլոր իւր ընտանիքովը և տանով մեր Տրդատ թագաւորի մօտ եկաւ (եր. 218)։ Բազմակնութեան շրջանում է նմանապէս կին սեփականացնելու սովորութիւնը առաջ գալիս, և այդ տեսակ կանանց՝ դուստր, ընտանի և կամ հետէրական կանանցից զանազանելու համար, մեր մատենագիրները կին և ընտանիք խօսքերն են գործ ածել։ Այնուհետև, երբ միակնութեան գաղափարը պարտաւորեցուցիչ է դառնում քրիստոնէութիւնից յետոյ, հետէրական

---

1) Եւ նախարարների ազգերից վերցնում է այս երկու բանը—մերձաւորների խնամութիւնը, որը հայրենական ազատութիւնը պահելու համար էին անում ագահութեամբ (Խ. Ծ. վ. Սա., էջ 259)։

և ընտանեկան յարաբերութիւններից դուրս ծագում են ամուսնական յարաբերութիւնները։ Կին ամուսինն է առաջ գալիս։ Երիտասարդութիւնից յետոյ էլ այժմեան հասկացողութեամբ ընտանիքը միանգամից առաջ չեկաւ, որովհետև լինում էր որ կանանց հերթութեամբ փոխում էին, ինչպէս Փաւստոսն է ասում—«էր զի մի այր տասն կին փոխէր»։ Ուրեմն մեր մէջ հետերական ամբողջութիւնը փոխարինաբար տեղի էր տալիս ընտանեկան և ազատ ամուսնական սովորութեան։ Հետերական կինը այն էր, որին այրը կարող էր հերթութեամբ փոխել։ Ընտանիք կինը՝ սեպհականացրած կինն էր վերաբերում. իսկ կին ամուսինը՝ քրիստոնէական մտքով առած կինն էր։ Եւ մինչև որ քրիստոնէական սովորութիւնը չմարմնացաւ, մարդիկ խառն սովորութեամբ էին կանայք ունենում՝ ունենում էին ընտանիք կին, կին և սովորական կանայք կամ աղախ Փաւստոսը, օրինակ, ասում է—«Եւ բազումք ի նախարարացն հայոց թողին զկանայս իւրեանց, զորդիս և զընտանիս և փախեան ընդ այս ընդ այն գնացին (Փ. եր. 149)։ Եւ ժողովէր (Արծրունեաց Աշոտ իշխանը) զաղխ տան իւրոյ յամրոցն Դամբերեոյց, և զորդիսն և զամենայն ընտանիս իւր, և թողոյր ապահովութեան ի վերայ ամրոցին պահել (Ղևոնդ պատմ. 119)։

Աղխ խօսքի նշանակութիւնն էլ ժամանակի ընթացքում փոփոխուեց. սկզբում նշանակում էր մանր երեխաներ, տարբեր կանայք և այլն։ Երբեմն էլ ցեղի բոլոր պատերազմ դուրս չեկողներն էին այդ խօսքով անուանում։

Անցնենք ցեղական կազմակերպութեան մասին առանձին։

Հայկազունք սերունդների էին բաժանւում։ Կային որդւոց, որդկերանց որդւոց սերունդներ։ Կային և ցեղի դուստր-կանայք, որոնք ցեղին հարազատ ծագումն ունէին։ Դրանց մէջ կային բարեկամութեան այն տեսակները, որոնք ցեղին են յատուկ. իսկ ցեղը գլխաւորապէս կազմում էին պատերազմ դուրս եկողները։ Ցեղի մէջ կային որդիք և որդւոց որդիք, կային ձեռքի տակ եղածներ և ընդոծիններ. վերջիններս պատերազմ էին դուրս գալիս, անուանի մարդիկ էին, ցեղից էլ ծագումն ունէին, միայն որդիներին և որդւոց որդիներին հաւասար իրաւունք չէին վայելում։ Այս և ուրիշ այս տեսակ հանգամանքները մեզ թոյլ տալիս են ենթադրելու, որ Հայկազանց մէջ սեռական յարաբերութիւնները ոչ միայն իրանց ցեղի

անդամների միջումն էին կապւում (էնդոգամիա), այլ նրանց մէջ սովորութիւն կար և ցեղի կանայք ունենալ (էկզոգամիա), որոնք ի հարկէ սկզբում ընդհանուր ցեղի սեփականութիւնն էին։ Մանկտիքը, գերի կանայք և ցեղական պատկանելութիւնը ընդհանուր ցեղինն էին համարւում և աղխ անուամբ էին յայտնի։ Դժուար է է մինչև անգամ մօտաւորապէս որոշել, թէ երբ Հայկազանց մէջ մուտք գործեց բազմակնութեան սովորութիւնը. բայց դրա գոյութիւնը ակներև է։ Այդ սովորութիւնից առաջ կին կամ դուստր անուն էր կրում, երբ դա ցեղից հարազատ ծագումն ունէր, և կամ իբրև գերի բերած, ընդանուրի սեփականութիւնն էր և աղխի հաշւումն էր։ Բայց բազմակնութեան սովորութիւնը մուտք գործելուց յետոյ՝ յափշտակուած կամ սեփականացրած կանայք ընտանիք են համարւում։ Քրիստոնէութիւնից յետոյ, երբ միակնութեան գաղափարն է առաջ գալիս, մենք տեսնում ենք, որ մերձաւորներից քրիստոնէութեան սկզբունքով առածն է կին ամուսին անւանւում։ Տղամարդը պահպանում է հետէրական յարաբերութիւնը միայն մերձաւոր կանանց հետ, որոնք նրա կինը կամ ընտանիքն են համարւում։ Մի խօսքով հետէրական յարաբերութիւնները հետզհետէ տեղի էին տալիս ընտանեկան և պարզ ամուսնական յարաբերութեան։

## IV

Հայկազուններից ծագած ազգերը և ծնունդները։ Ազգերի իրաւունքները ծնունդների տարածւելը, տեղ բռնելը, սահմանը, ժառանգութիւնը։ Ազնըւականների առաջ գալը։ Շէնը։ Շէնը սկզբում կլանն էր։ Ինչ էր նշանակում շէնը Արշակունեաց ժամանակ։ Քաղաք, գիւղ, դաստակերտ։ Աւան, շէն և շինամիստ աւան։ Շէնք պարգևելը։ Շինականների դասակարգը Շէնը ցեղական եղանակով ապրող ժողովուրդն էր։ Ամփոփումն։

Թէ ինչպէս էին Հայկազուններից ցեղեր և ծնունդներ ծագում, ինչպէս էին դրանք տների բաժանւում, ժառանգութիւն և կալուածք հաստատում, սահմաններ որոշում. թէ ինչ էին ցեղապետների առաւելութիւնը և իրաւունքները, ինչ տեսակ ցեղերի բաժանւեցան և այլն այդ ամենը հասկանալու համար նախ Խորենացու իրան բուն խօսքերը առաջ կը բերենք, յետոյ նոյնը Խորէն

Ծայրագոյն վերջապէս Ստեփանեի թարգմանութեամբ կարդացինք և դրանից յետոյ միայն եզրակացութիւններ կանենք։

«Երթեալ (Հայկը) բնակէ ի լեռնոտին միում ի դաշտավայրի, յորում սակաւք ի մարդկանէ յառաջագոյն ցրուեալոցն դադարեալ բնակէին, զորս հնազանդ իւր արարեալ Հայկ, շինէ անդ տուն բնակութեան կալուածոց և տայ ի ժառանգութիւն Կադմեայ որդւոյ Արմենակայ։ Եւ ինքն խաղայ, ասէ, այլով աղխիւն ընդ արևմուտս հիւսիսոյ գայ բնակէ ի բարձրաւանդակ դաշտի միում, և անուանէ զանուն լեռնադաշտակին Հարք. այսինքն անդէն բնակեալքս՝ ազգի տանն Թորգոմայ։ Շինէ և գիւղ մի, և անուանէ յիւր անուն Հայկաշէն... հարաւոյ կողմանէ դաշտիս այսորիկ առ երկայնանիստ միով լերամբ բնակեալ յառաջագոյն արք սակաւք՝ ինքնակամ հնազանդեալ դիւցազնին» (Խոր. եր. 33)։ Եւ Կադմեայ թոռին իւրում... հրամայէ զնոյն տեղի բնակութեան ունել նմա զառաջնոյ իւրոյ տանն, և ինքն երթեալ դադարէ յանուանեալ տեղին Հարք։ Սա կեցեալ ամս, ծնաւ զԱրմենակ ի Բաբելոնի... (Հայկ) մեռանի, յանձն առնելով զբովանդակ ազնին Արմենակայ որդւոյ իւրոյ (Խ. 38)։

«Իսկ նորա թողեալ երկուս յեղբարց իւրոց զԽոռ և զՄանաւազ ամենայն աղխիւն իւրեանց ի կոչեցեալն Հարք, և զորդի Մանաւազայ զԲազ. յորոց Մանաւազ ժառանգէ զՀարք, իսկ որդի նորա Բազ՝ յարևմտից հիւսիսոյ զեզր ծովուն աղւոյ, և զգաւառն և զծովն անուանէ իւրով անուամբ։ Եւ ի սոցանէ ասեն լեալ զնահապետութիւնս Մանաւազեան և զԲզնունեաց և որդւոյն անուանեալ, որք ասեն ուրեմն յետ որքոյն Տրդատայ բարձեալ ասեն ի միմեանց պատերազմաւ։ Իսկ Խոռն ի կողմանս հիւսիսոյ բազմանայ, կարգէ զշէնս իւր և ի նմանէ ձգեալ ասի մեծ նախարարութիւն ազգին Խոռխոռունեաց։

«Իսկ Արմենակայ առեալ զամենայն բազմութիւնն, խաղայ յարևելս հիւսիսոյ, և երթեալ իջանէ ի խորին դաշտավայրի մի ի բարձրագագաթանց պարսպեալ լերանց... (Խ. եր. 39)։

«Յայսմ խորութեան դաշտի բնակեալ Արամենակայ, շինէ զմասն ինչ ի հիւսիսոյ կողմանէ դաշտին, և զատն լերինն ի նոյն կողմանէ, և զլեառն անուանէ յանգագոյն յիւր անուն Արագած, և զկալուածն

կոչէ զանուն նորա Գեղամի, որ շինեաց ի Գեղամեայ թոռանէ անուանեցաւ Գառնի։

«Ի սորա ծննդոց, ասա ուրեմն առ Արտաշիսիւ թոռամբ Վաղարշակայ, ոմն Վարժ անուն պատանի լեալ, աջող յորս եղջերուաց և այծեմանց և վարազուց... զսա ի վերայ որսոց արքունականաց կարգէ, և շէնս պարգևէ նմա առ եզերբ գետոյն, որ անուանեալ կոչի Հրազդան։ Այս Գեղամ, որպէս ասացաք, յետ ամաց կենաց իւրոց ծնանի զՀարմայ. յետ որոյ և այլն ևս, և մեռանի։ Եւ հրամայեաց որդւոյ իւրում Հարմայ բնակել յԱրմաւիր։

«Այս Հայկ որդի Թորգոմայ, որդւոյ Թիրասայ... նախնի Հայաստանեայց. և այս ազգք նորա և ծնունդք և աշխարհ բնակութեան և յայսմ յետէ սկսան, ասէ, բազմանալ և լնուլ զերկիր։ Իսկ Հարմայ... ծնաւ զԱրամ (Խ. 43)։

«Արամ... ներեալ յազգացն՝ որ շուրջ զիւրեաւ, և ժողովէ զբազմութիւն ընտանի արանց քաջաց և աղեղնաւորաց... Սա այր հայրենասէր եղեալ... լաւ համարէր զմեռանելն ի վերայ հայրենեացն, քան թէ տեսանել զորդիս օտարածնաց կոխեալ զսահմանս հայրենիս և հարազատաց արեան նորա տիրել արանց օտարածնաց... (Խոր. եր. 45)։

Ահա նոյնը Խորէն Ծ. վ. Ստեփանէի թարգմանութեամբ։

«Նա (Հայկը) գալիս բնակում է մի սարի ստորոտի մօտ դաշտավայրի մէջ, որտեղ բնակում էին արդէն առաջագոյն ցրուածներից սակաւաթիւ մարդիկ։ Սոցա հնազանդեցնելով իրան, Հայկը շինում է այնտեղ բնակութեան տներ և տալիս է ժառանգութիւն Կադմոսին, Արմենակի որդուն։ Բայց ինքն, ասում է, միւսած մարդիկների հետ գնում է դէպի հիւսիսային արևմուտք (էջ 29), գալիս բնակւում է մի բարձր դաշտի մէջ և այս լեռնադաշտի անունը դնում է Հարք, այսինքն այստեղ բնակողները Թորգոմեան տան ազգի Հայրեր են։ Այստեղ շինում է մի գիւղ, որը իւր անունով կոչում է Հայկաշէն... Այս դաշտի հարաւային կողմում մի երկայնանիստ սարի մօտ դեռ առաջագոյն բնակում էին սակաւաթիւ մարդիկ, որոնք ինքնակամ հնազանդեցան դիւցազնին (եր. 30)։

...«Իսկ Կադմոս թոռանը հրամայում է իւր առաջին բնակութեան տեղը բռնել։ Ինքը գնում է և բնակում է Հարք կոչուած տեղում։

Քանի մի տարի ապրելով Բաբելոնում ծնել էր իւր Արմենակ որդուն... (Հայկը) մեռնում է յանձնելով ազգը իւր Արմենակ որդուն։ Սա թողնում է իւր եղբայրներից երկուսին Խոռին և Մանաւազին բոլոր իրանց ընտանիքով, նոյնպէս և Մանաւազի Բազ որդուն, Հարք կոչւած տեղում։ Սոցանից Մանաւազը ստանում է ժառանգութիւն Հարքը, իսկ նրա որդին Բազը ստանում է աղի ծովի հիւսիսային արեւմտեան եզրը և բոլոր գաւառին ու ծովին դնում է իւր անունը։ Սոցանից, ասում են, սկսել են Մանաւազեան, Բզնունի և Որդունի անւանւած նահապետութիւնները, որոնք, ինչպէս պատմում են, միմեանց պատերազմով ջնջեցին սուրբ Տրդատից յետոյ։ Իսկ Խոռը բազմանում է հիւսիսային կողմերում և շինում է իւր համար շէներ։ Սրանից, ասում են, սկսել է Խորխոռունի ազգի մեծ նախարարութիւնը։ Իսկ Արմենակը, առնելով բոլոր բազմութիւնն իւր հետ, գնում է դէպի հիւսիսային արեւելք և գալիս իջնում է բարձրագագաթ սարերով պատած մի խոր դաշտավայր... Արմենակը բնակելով այս խոր դաշտի մէջ, շէնցնում է նորա մի մասն հիւսիսային կողմից և սարի նոյն կողմի ոտը և սարը կոչում է իւր անունով Արագած, իսկ իւր կալւածքներն Արագածոտն (եր. 35)։

...«Մեր նախնի Հայկի գալուց առաջ մեր երկրի մէջ շատ տեղերում ցիր ու ցան բնակած գտնուել են սակաւ մարդիկ։ Այս Արմենակը տարիներ ապրելով մեռաւ։ Իսկ նորա որդին Արմայիսը շինում է իւր բնակութեան տունը մի բլրի վերայ, գետի ափին մօտ, և իւր անունով կոչում է «Արմաւիր», և գետի անունը դնում է «Երասխ», իւր Արաստ թոռի անունով։ Իսկ իւր բազմածին և շատակեր որդուն Շարային ուղարկում է բոլոր նորա ընտանիքով մերձակայ բարեբեր դաշտը, որը Արագած կոչւեց։ Սորա անունով, ասում են, այն գաւառը «Շիրակ» կոչւեց։ Այժ Արմայիսը տարիներ ապրելով ծնում է Ամասիայ որդուն, որից յետոյ դարձեալ բաւական տարիներ ապրելով մեռնում է։ Ամասիան Արմաւիրում բնակելով քանի մի տարուց յետոյ ծնում է Գեղամին։ Գեղամից յետոյ ծնում է արի Փառոխին և Ցոլակին։ Սոցա ծնելուց յետոյ... շինում է երկու տներ, մեծամեծ ծախսերով։ Եւ այն տները ժառանգութիւն տւեց երկու որդիներին—արի Փառոխին և կայտառ Ցոլակին, որոնք առանձին բնակելով այն տեղերն իրանց անունով կոչեցին, Փառոխից—

Փառախոտ, և Ցոլակից—Ցոլակերտ։ Իսկ Գեղամը ծնեց Արմաւիրում Հարմայ որդուն և թողնելով սորան Արմաւիրում, որոնց հետ բնակում էր, ինքը գնաց արեւելահիւսիս, սարի միւս կողմը մի ծովակի ափ։ Նա շէնցնում է այն ծովակի ափը, թողնում է այնտեղ բնակիչներ և կոչում է սարը իւր անունով Գեղ, իսկ շինուած տեղերը Գեղարքունի. այսպէս է կոչւում և ծովը։ Այստեղ նա ծնեց իւր որդի Սիսակին… Տալով նրան իւր ունեցածի մեծ մասը և բազմաթիւ ծառաներ, Գեղամը կտրում է նրան ժառանգութեան սահման ծովից դէպի արեւելք մինչև մի դաշտ… Սիսակը բնակելով այստեղ, լցնում է շինութիւններով իւր բնակութեան սահմաններն և այն աշխարհը կոչում է իւր անունով Սիւնիք, որը պարսիկներն առաւել մաքուր Սիսական են ասում։ Ահա սորա սերընդակիցներից էին այն անուանի մարդիկը, որոնց գտաւ այստեղ Վաղարշակ, Պարթևներից Հայերի առաջին թագաւորը, և տէր կարգեց այն աշխարհի վրայ. ահա Սիսական ազգը։

…«Իսկ ինքն Գեղամը մի ամուր ձորի մէջ շինում է մի ձեռակերտ և կոչում է նրան Գեղամի, որ յետոյ նրա Գառնի թոռի անունով Գառնի կոչւեց։ Սրա սերունդներից, Վաղարշակի Արտաշէս թոռի ժամանակը կար Վարժ անունով մի պատանի, որ շատ յաջող և քաջ էր եղջերուներ, այծեամներ և վարազներ որսալու և նետ ձգելու մէջ։ Արտաշէսը կարգում է նրան արքունի որսերի վրայ և պարգևում է նրան գիւղեր այն գետի ափի մօտ, որ կոչւում է Հրազդան։ Այս գեղումը, ինչպէս ասացինք, քանի մի տարիներ ապրելուց յետոյ, ծնեց Հարմային, սրանից յետոյ և ուրիշ որդիներ և մեռաւ։ Իւր որդի Հարմային հրամայեց բնակել Արմաւիրում (38)։

…«Այս է ահա Ցաբեթի որդու, Գամերի որդու… Թորգոմի որդին Հայկը, հայերի նախնին. ահա նրա ազգերը, ծնունդներն և բնակութեան աշխարհը։ «Եւ այնուհետև սկսեցին, ասում է, բազմանալ և լցնել երկիրը»։ Իսկ Հարմայ քանի մի տարուց յետոյ ծնեց Արամին (38)։

…«Սա աշխատասէր և հայրենասէր մարդ լինելով—լաւ էր համարում մեռնել հայրենիքի համար քան թէ տեսնել, թէ ինչպէս օտարազգիների որդիներն ոտի տակ էին կոխում հայրենիք սահման-

ները և օտար ազգի մարդիկ տիրում էին իւր արիւնի հարազատ-ներին։ Այս Արամը... իրան շրջապատող ազգերից նեղուելով, հաւաքում է ընտանի քաջ աղեղնաւոր մարդիկների բազմութիւն (Եր. 39)։

Քննելով բերած հատուածները, մենք տեսնում ենք, որ Հայկազանց մէջ Նախ կայքի Հայկից ուղիղ գծով ծագածները, որոնք առաւելութիւն էին վայելում միւսներից։ Հայկը ամբողջ գաղթականութեան գլուխ կանգնած, եկաւ Հայաստան. պատերազմներում նա առաջնորդում էր բոլորին։ Գիւղ և դաստակերտ շինեց։ Տեղացիք նորան հնազանդուեցան։ Իր ընդածիններից անուանիները տալով Կադմոսին՝ թողնում է նորան ժառանգաբար իր առաջին իջեւանած տեղը, և ինքը բազմութեամբ առաջ անցնում է «Հարքս անուանեալ տեղը, իւր մահուանից առաջ բովանդակ ազգը յանձնելով Արմենակին։ Հարքում և դորա շրջակայքում Արմենակը թողնում է իր Խոռ և Մանաւազ եղբայրներին և Բազ եղբօր որդուն՝ իրանց ազխով, իսկ ինքը բազմութեամբ առաջ գնում է մի ուրիշ տեղ է շինցնում և այդ տեղը Արագածոտն է անուանում։

Արմենակից ուղիղ գծով ծագած՝ Ամասիան, Արմայիս, Գեղամը, Հարման և Արամը բնակւում են այնտեղ, ուր դրանց տունը մի բլրի վրայ էր և անուանւում էր Արմաւիր։ Դրանց նմանապէս մենք միւսների վրայ գլուխ կանգնած ենք տեսնում։ Ամասիան իրան որդւոց համար Փառախոտն և Ցոլակերտն է շինցնում և այդ տեղերը Փառոխին և Ցոլակին է ժառանգութիւն տալիս։ Արմայիսը իր Շարայ որդուն իր ազխով տեղաւորում է մի ուրիշ կողմում, ուր Շարան տարածւելով, դաշտը իւր անունով է կոչւում։ Գեղամը թողնելով Հարմային Արմաւիրում բազմութեան մի մասը՝ նստացնում է Գեղարքունի անուանեալ տեղը, որոնցից իբրև բնակիչներից այստեղ չէն գոյացաւ։ Սիսակին տալով իր ծառաների մեծ մասը, Գեղամը նրա համար սահման է որոշում ժառանգութեան և նմանապէս Գառնի անուանեալ ձեռակերտն է շինում։ Այստեղից մենք տեսնում ենք որ Հայկը, Արմենակը, Ամասիան, Արամայիսը, Գեղամը, Հարման և Արամը մի տեսակ իրաւունք և առաւելութիւն էին վայելում միւսների վրայ։ Կադմոսը, Խոռը, Մանաւազը, Բազը, Փառոխը, Ցոլակը, [illegible]ն, Սիսակը զուրկ էին այդ իրաւունքներից։ Սրանք իրանց մօ-

տակայ, գետերի, լեռների և մինչև անգամ ծովերի և իրանց տեղե-րի, դաշտերի և աշխարհների վրայ իրանից անուններ դնում և այդ տեղերը ժառանգում էին։ Մեր հայագէտները նրանց, որոնք միւսների վերաբերեալ իրաւունք իշխանութիւն և սեփականութիւն են ունենում, ազգ են անուանում։ Որքան հեշտ, որքան վերաբերեալ է Խորենացին ազգ խօսքը գործածում ասելով. «Հայկից ծագած ազգերը, ծնունդները»։ Ինչպէս Խորենացին Հայկեան ցեղը կամ սերունդ-ներին մանրամասն կերպով նկարագրում է, երբ դրանք ծնւում էին Հայաստանում, այնպէս էլ մեծագործութեան և առաջին նկարագրեալ այդ ցեղի և գոյացած ծնունդների կազմակերպութիւնը, երբ դրանք տարածւում էին Հայաստանի զանազան կողմերում։ Բազմութիւնը ծնացել էր Արագածոտնում, ուր Ամասիան, այդ բազմութեան գլխի կանգնածը, հաւանական է և ցեղապետը, Արմաւիրն էր շինել և այնտեղ բնակւում էր։ Միւս ցեղապետներից շատերն էլ այնտեղ ծնւեցան և ապրեցին։ Յայտնի բան է, որ այդ բազմութիւնը ցեղն էր, որը ինչպէս Խորենացին նկարագրել է, բաղկացած էր որդիներից, թոռներից, որդւոց որդիներից, ընտանիքներից և այլ խիցւ Ծնունդները նկարագրելու համար Խորենացին երբեմն յիշում է դրանց գլուխ կանգնածներին։ Երբեմն էլ ասած է, որ այդ ծնունդների գլուխ կանգնածները իրանց ազգով և կամ ընտանիք-քով և կամ ծառաներով, այս ինչ կամ այն ինչ տեղում, կամ գա-ւառում և աշխարհում տարածւեցան։

Այս մեր ենթադրութիւնները նրանով են հաստատւում, որ Խո-րենացին ասում է, թէ «Գեղամը ծնեց Հարմա որդուն Արմաւիրում և թողնելով նրան Արմաւիրում, որտեղ հետ բնակւում էին, ինքը ուրիշ տեղ գնաց» (Խ. 42)։ Երբ Հարմայ ասելով միայն մի որդի պիտի հասկացւէր, այն ժամանակ Խորենացին կ'ասէր, որ Գեղամը թողեց Հարմայ որդուն Արմաւիրում, որտեղ նրա հետ, և ոչ թէ նրանց հետ, բնակւում էր։ Ուրեմն Հարմա ասելով մենք պէտք է հասկանանք Հարմային իւր ծննդակիցներով կամ Հարմա անունով որ-դիքը։ Մի խօսքով Խորենացին ցեղերի և ծնունդների գլուխ կանգ-նածների անունները տալով այդ ցեղերն և ծնունդներն էր հաս-կանում այնպէս, ինչպէս Հարման ասելով նա հասկանում էր Հար-մային իր ծննդակիցներով և կամ ցեղակիցներով։

Միւս կողմից, ինչպէս երևում է, Խորենացին շատախօսութիւնից փախչելով, ծնունդների մանրամասն կարգաւորութիւնը չի նկարագրում։ Ասել թէ Մանաւազը, Խոռը, Բազը, Շաւրոն՝ իրանց ազգով այս ինչ կամ այն ինչ տեղը տարածուեցան, նշանակում է, որ սոքա իրանց ցեղով կամ ծնունդով բնակութիւն հաստատեցին. որովհետև ազգ խօսքը այս նշանակութիւնն էլ ունէր։ Կադմոսին ընդոծիններով և Արամի ծառաներով իրանց մեծերը որոշ տեղերում բնակեցնելով, անտարակոյս պէտք է հասկանալ, որ սրանք ստորադրեալ ծնունդների գլուխ կանգնած այդ երկիրներում տարածուեցան. որովհետև ընդոծինը ստորադրեալն էր, իսկ ծառայ խօսքը, ինչպէս կը տեսնենք, հին Հայաստանում նշանակում էր հպատակ։

Ինչպէս երևում է, Հայկազունք վաղ բաժանուեցան ցեղերի, որովհետև Հայկազուններից սերուած ծնունդները, ցեղերը՝ շատ վաղ ունեցան իրանց ջոկ սահմանները և իրաւունքները։ Օրինակ՝ Բէլը հետևեալ զօրքով գալիս է «մերձ ի տունն Կադմեայ» (Խ. 34) [1]) Կադմոսը... «փութացեալ իմ զմերձ լինելոյն նորա ի տուն իմ» [2]) փախչում է մինչև Հայկի մօտ։ Բէլը շտապում է հասնել «ի սահմանս բնակութեան Հայկայ» (Խ. 35) [3])։ Վաղարշակը պատերազմից յետ դառնալու ժամանակ հասաւ «ի տեղիս խոտաւէտս մերձ ի սահմանն Շարայի (Խ. 108) [4])։ Նոյն այդ Շարայից ծնունդներ էին ծագել, հետևապէս դա ջոկ ցեղ էր դարձել։ Արամը Հայաստանի արևելեան և հարաւային մասերը նուաճել էր և արևելքը յանձնել էր Սիսական ցեղին, իսկ հարաւը Կադմեան տան... «Եւ քանզի զարևելեայսն և զհարաւայինն նուաճեալ ի ձեռն յանձնեալ էր երկուց ցեղիցս այսորիկ, Սիսակեանցն զարևելս, և որք ի Կադմեայ տանէն՝ զԱսորեստանին (Խ. 48) [5])։

---

1) Կադմոսի կալուածից մօտ (Խ. ծ. վ. Ա. 31)։

2) Եւ ես իմանալով նորա իմ երկրի մօտ լինելը (31)։

3) Հայկի բնակութեան սահմանները (Նոյն 36)։

4) Շարայի սահմանի խոտաւէտ տեղերը (Խ. ծ. վ. Ա. 32)։

5) Եւ որովհետև արևելեան և հարաւային կողմերը նուաճել էր և յանձնել էր հետևեալ երկու ցեղերին, արևելքը—Սիսական ցեղին և Ասորեստանը—Կադմոսի ցեղին (Նոյն, 42)։

Ցեղական կազմակերպութեան նախագիտելիքից մենք տեսանք, որ ցեղի մէջ մայրական ընտանիքի միջոցով կլանն էր առաջ գալիս։ Եւ երբ ցեղի միատեսակութիւնը ոչնչանում էր, ցեղը ցեղերի էր բաժանւում։ Տեսանք նաև, որ կլանը ստորադրեալների թւում էր և ցեղի հարազատ ծագում ունեցողների կարգադրութեան տակ էր։ Այդպէս էլ Հայկազանց մէջ էր։ Ինչպէս վերևում յիշեցինք, սրանց հարազատ և ստորադրեալ ցեղերը և ծնունդները իրանցից ծագումն առած հարազատ առաջնորդների հետ տարածւեցան զանազան կողմերում։ Գեղամը բազմութեան մի մասը տանում է և իբրև բնակիչ նստացնում է Ծաղկեզերքում և, ինչպէս Խորենացին ասում է, գոյանում է շէն, որը անւանւում է Գեղարքունի։ Խորենացին ասում է թէ Խոռը հիւսիսային կողմերումն է բազմանում և աւելացնում է թէ նա «կարգէ զշէնս իւր»։ Ուրեմն շէնը գոյանում է այն ժամանակ, երբ ցեղի բազմութեան մի մասը բաժանւելով ցեղից, նոր տեղ էր նստում և այդ շէնը իրան գլուխ կանգնածի կարգադրութեան տակ էր։ Այսպիսի բաժինները ցեղական կեանքում կարող էին տեղի ունենալ այն ժամանակ, երբ դրա անդամները քիչ շատ մէկը միւսից սկսում էին զանազանւել կլաններ գոյանալու միջոցին։ Ուրեմն այս դէպքում շէնը կլանը պիտի լինէր։

Եթէ շէնը լինի կլանը կամ ստորադրեալ ծնունդը, մեզ հասկանալի կը լինի թէ ինչու Հայկի շինած գիւղը Հայկաշէն անւանւեց. նմանապէս թէ ինչու Մարաց գերութիւնից շէն էլ գոյացաւ։ Յայտնի բան է, գիւղում բնակող, պատկանելի մարդից և կամ գերիներից՝ մայրական ընտանիքի միջոցով՝ կարող էր կլան գոյանալ, որը մեր մատենագիրները շէն խօսքով են արտայայտում։

Այսպիսով մենք տեսնում ենք, որ ցեղական կազմակերպութիւնը փոփոխւելու ժամանակ՝ նախ առաջ էր գալիս շէնը կամ կլանը. երբ ցեղի և կլանի անդամների մէջ աւելի միատեսակութիւն կար, դրանց անդամները միևնոյն մանկունք անունն էին կրում։

Խորենացին օրինակ (եր. 104) ասում է «և գծովեզերեայն մանկունս, որք ի Գեղամայ և ի Քանանացւոց, և Շարայի ծնունդ

եւ Գուշարայ և առ Թէոփիլակտոսն, և զՆազովկացին և զնոցա մերձաւորսն [1]:

Այս հատուածը մեզ ցոյց է տալիս, որ հարազատ արիւն ունեցող Գեղամայ սերնդից և օտարածին քանանացիներից ծագածները նոյն մանկունք անուամբ էին յայտնի, որ ապացուցանում է դրանց մերձաւոր լինելը. և վերջապէս Սիսակեանները և Գաղամեանները ունէին և իրանց բարեկամ կամ մերձաւոր ցեղերը:

Ուրեմն երբ շէնը կլանն էր, այդ ժամանակ դրանց անդամները առ հասարակ մանկունք անուամբ էին յայտնի, ինչպէս և ցեղի միւս անդամները, իսկ յետոյ շէնը ջոկւում է ցեղից և կազմում է անկախ և բարեկամ կամ մերձաւոր, բայց ստորադրեալ ցեղ, որոնք նմանապէս այդ մոքով շէնի հաշւումն էին, բայց Արշակունիները այդ ստորադրեալ ցեղերից մի քանիսը բարձրացրին և միւսներին հաստատցրին:

Շէն Հայաստանում Հայկազանց հաւասար, եթէ ոչ աւելի, բազմաթիւ օտար ցեղեր կային՝ մարք, հրէայք, քանանացիք, խեբրացիք, ասորիք և այլն: Դրանցից շատերը թէև գերի բերածներից էին, կամ հալածանքներից էին փախուստ տւել դէպի Հայաստան, բայց երբեմն լաւ իրաւունք էին վայելում, օրինակ մարաց թագուհին և աղջկունքը, որոնք գերի էին բերւած, մեծ պատւով էին բնակեցրած: Բագարատը ստորադրեալներ ունէր: Բուլղարացիք շէներ էին կազմում. մարաց գերութիւնից, շէն գոյացաւ և այլն: Վերջապէս այս օտարածինները այն աստիճան էին ուժեղացել, որ Վաղարշակը սրանց նաև լաւ իրաւունքներ տւաւ:

Ինչով էին կարող այդ գերիները և հալածանքներից փախուստ տւածները այս տեսակ իրաւունքների տիրանալ, եթէ ոչ խառնւելով Հայկազանց հետ և մայրական ընտանիքի միջոցով կլաններ կամ շէներ գոյացնելով: Եւ իրօք՝ մի ընդհանուր երևոյթ էր աչքի ընկնում հին Հայաստանում. դա օտար ցեղերի ընտանեանալը և մերձաւորանալն էր:

---

[1]) Եւ ծովեզերեայ մանուկներին, որոնք Գեղամի և քանանացիների և Շարայի և Վուշարի ծնունդներն էին, նմանապէս և Սիսակեաններին և Գաղամեաններին և նոցա մերձաւորներին (Խ. ծ. վ. Ս. եր. 89):

Խորենացու ջանքերիցն էլ մեկը այն էր, որ քննի թէ ով ոք ի գեղջից որոշելոց ընտանի և մերձաւորաց և ովք ոմանք եկք ընտանեցեալք և մերձաւորեցեալք (Խոր. եր. 8) [1]։

Հին հայոց կեանքում մեծ դեր էին կատարում այդ օտար ցեղերի անուն կրող մերձաւորաց գաղթականները, որոնց մեր մատենագիրները հայեր էին ներկայացնում։ Եւ շատ բնական է կարծել, որ սոքա Հայկազեաններից ծագած կլանները և ցեղերը, ամեն մեկը անկախ առօրագրերով ցեղեր դարձած լինէին. և ուղիղ այդ մերազնանալը քայլ առ քայլ էր լինում։

Երբ հարազատ ցեղերը մերձաւոր ցեղերից բաժանւում էին, էլ դոցա անդամները մանկունք չէին անւանւում, այլ զաւակացութեամբ էին միմեանցից սկսում զանազանուել։ Ասում էին օրինակ՝ ի զաւակէ Սենեքերիմայ, ի տանէ Սանասարայ, ի զաւակէ Աժդահակայ, ի զաւակէ քանանացւոց, յորդւոցն Տարայի, ի զաւակացն Գուշարայ Հայկազնոյ, ի զաւակացն Խոռայ Հայկազնոյ և այլն։

Հարազատ և արտօնութիւն վայելող զաւակներից ազնուականները առաջ եկան, ռամկացեալները շինի շարքն ընկան։

Հայկազանց ժամանակ թագաւորներից ծագածները զարմեր էին անւանւում, և դոքա ամեն մեկը գիւղերի և դաստակերտների տէրեր էին։ Դոցա նահապետը իշխան էր Ատրպատականից մինչև Ջուղա և Նախճաւան երկիրներին, հետևապէս դոքա էլ ցեղական կազմակերպութեան մէջ էին։ Ազնուականները հետևեալ կերպով էին առաջ գալիս. նախ ցեղերի մէջ միապետականութիւնը կերպարանափոխւում էր՝ առաջ էին գալիս ուժեղ, երևելի և անւանիները, որոնք Արշակունիներից առաջ էլ և Արշակունեաց ժամանակ էլ իբրև հարազատ և որոշ ծագումն ունեցող զաւակներ թէ ժառանգութեամբ և թէ թագաւորից ստացած ունէին զանազան տեսակ իշխանութեան, տէրութեան և սեպհականութեան իրաւունքներ. այս իրաւունքներին դոքա տիրացել էին նախ հարազատ ծագմամբ։ Հարազատ ազգերը և ծնունդները, երբ ցեղական կապը անխախտ էր,

---

[1]) Եւ թէ այս զանազան ցեղերից ով էր ընտանի հաւատացեալ և ովքեր չէին եկամուտ ընտանեցեալ և հաւատացեալ (Խ. Ծ. Վ. Ա. եր. 9)։

մի ընդհանրութիւն էին կազմում և ցեղից ջոկուած չէին։ Ազգը գերիշխանութիւն ունէր ծնունդների վրայ, իսկ ծնունդների մէջ հարազատ ծագումն ունեցողները գերիշխանութիւն ունէին ընդոծինների վրայ։

Երբ ցեղերից կլանները կամ շէները ջոկւեցան, հարազատ ծագումն ունեցողներն էլ իրանց կողմից ջոկ տոհմեր կամ ազատայնոց տներ կազմեցին։

Արշակունիք իրանց կողմից ազնուականներին ուրիշներից զանազանելու համար՝ դոցա ազգ էին կոչում, ինչպէս Դիմաքսեանք, Տրունիք, Առաւեղեանք, կամ ազգանուն կրելու իրաւունք էին տալիս, ինչպէս Բագարատից ծագածները իրաւունք ստացան Բագրատունի անուանելու և այլն։

Վաղարշակը գտաւ Սիսականներից մէկին և աշխարհի վրայ տէր կարգեց և ահա Սիսական ազգը առաջ եկաւ։ Երբեմն էլ անազգիններին ազգ էին կոչում։ Երբ միահեծանակ զաւակների մէջ ազգերը առաջ եկան, միւս արտօնութիւն վայելող զաւակները կամ ծննդակիցները տոհմ անուանեցան։ Մանրամասնօրէն տոհմը կը քննենք մեր գրուածքի երկրորդ մասում։ ~~Թագաւորութիւնը ջոկ է,~~ Նախարարութիւնը ջոկ է։ Թագաւորը պիտի կարգէր «յազգ և ի նախարարութիւն» կամ այդ աստիճանին պիտի բարձրացնէր, որ մէկը նախարար լինէր։ Եւ ուղիղ մենք տեսնում ենք ազգերը և տոհմերը առանձին գոյութիւն ունէին, նախարարները առանձին (Փ. 37)։ Կար Աղձնեաց Բդեշխը, կար Աղձնեաց Նախարարութիւնը, կար և զօրք և տունն տոհմին Աղձնեաց։ Կար Արծրունեաց իշխանը—որը ազգն էր, կար և Արծրունեաց տոհմը (Թով. Արծ. եր. 109)։ Տոհմակցութիւնը նոյն ցեղակցութիւնն էր, որը վերաբերում էր ազատայնոց, կային տոհմակիցք, տոհմայինք, տոհմիկներ։ Տոհմերին պատկանող անձնաւորութիւնները մէկը միւսի հետ սերտ կապուած էին. դոքա ունէին իրանց տունը և տանուտէրը։ Ասում էին, օրինակ, տանուտէր-նահապետ Մամիկոնեան տոհմին։ Ազգը տոհմին վերաբերեալ գերիշխանութիւն ունէր. կարելի է ասել, որ ցեղերի մէջ հարազատ ծագումն ունեցողներից ազգերը և տոհմերը առաջ եկան, որոնք մեր ազնուականներն էին։ Դոքա ցեղական սովորութեամբ տնովի էին ապրում։ Թագաւորը ամբողջ Հայաստանը իւրա տունն էր հա-

մարում։ Քրմերը, օրինակ, Տրդատի կողմից իրանց դէմ կռուելու ուղարկուած իշխաններին պատասխանեցին՝ «Արդ մեք պատերազմաւ չկարիմք ձեզ ընդդիմանալ, զի այս տուն է թագաւորին հայոց և դուք իշխանք նորա (Զեն. գլ. 27)։

Այն շրջանը, որին տիրում էր նախարարը, նորա տունն էր համարւում։ Մամիկոնեանք, օրինակ, քաշուելով իրանց աշխարհներից մէկը, Փաւստոսը ասում է «թողին զայլ տուն իւրեանց (եր. 40)։ Պարսից թագաւորը թոյլատրել էր Ս. Սահակին տիրելու իրանց տան պատկանեալ գիւղերի մի մասը՝ «թողու ի նա սակաւ գիւղս ի նորին տանէ (Խոր. եր. 400)։

Տոհմերի մէջ սեպհականութիւնը և իշխանութիւնը տանն էր համարւում (Խոր. 349, 364, 367). բարեկամութիւնը տան հետ էր կապւում (Փ. եր. 25)։ Տները ունէին իրանց զօրքը և այլն։ Մի խօսքով այն շրջանը, որին մէկը տիրում էր, իշխում էր, կամ ուր մէկը սեպհականութիւն և այլ տեսակ իրաւունք ունէր, նրան տուն էին ասում։ Հետևապէս ազնուականները ցեղական սովորութեամբ էին ապրում, այսինքն տնով։

Դառնանք և քննենք ցեղի ստորադրեալ մասը։

Ցեղի ստորադրեալ մասից, ինչպէս տեսանք, «շէնը» առաջ եկաւ, որ սկզբում կլանն էր։ Հետզհետէ ցեղի կազմակերպութիւնը փոխուելուն պէս՝ շէն խօսքի իմաստն էլ փոխւում է։

Շէն խօսքի իմաստը լաւ հասկանալու համար, հարկ եմ համարում մի կարճ հայեացք ձգել թէ ինչ էր նշանակում շէնը հայկազեան շրջանին մօտակայ Արշակունեաց ժամանակը, երբ այդ խօսքը մօտաւորապէս նախկին նշանակութիւնը կունենար։

Բայց դորա համար առարկայից քիչ շեղուել է հարկաւոր։ Նախ քննենք թէ շէնը՝ բնակավայրը թէ ժողովուրդն էր հասկացւում։

Արշակունեաց ժամանակ, որմով պատած տեղը, լինէր դա եկեղեցի, անտառ և մինչև անգամ ամայի տեղ, քաղաք կարող էր անուանել։ Ասում էին, օրինակ, «քաղաքորմն եկեղեցւոյն Աշտիշատու (Փ. եր. 7) Ղազար Փարպեցին մի տեղ (եր. 16) ասում է, որ անտառը պատեցին քաղաք որմով և այդ տեղի անունը Խոսրովակերտ դրին։ Ագաթանգեղոսը ասում է (եր. 448) որ ագօթարան շինեցին մի տեղ և «բարձր քաղաքորմով փակեալ զտեղին

ի պատիւ, և դրամբք և դռնափակօք ամրացուցեալ և կանգնեալ անդ վնչան փրկչական խաչին, զի առհասարակ հասեալ որք այն տեղին, արարչին Աստուծոյ երկրպագեալ ծունր կրկնեսցեն: Ուրեմն հաւանական է, որ քաղաքները` պարսպով պատած տեղերն էին անուանում, կամ բերդերը և ամրոցները: Զենոբ Գլակը (եր. 43—45) Կարճես քաղաքը, բերդը և կամ ամրոցը մէկը միւսից չի զանազանում: Հաւանական է, որ քաղաքներում, այսինքն իրանց ամրոցներում և բերդերում, նստում էին, ինչպէս Եւրոպայում, աւատական տէրերի պէս բարձր դասակարգի մարդիկ և հենց այդ պատճառով Վաղարշակը հրամայեց, որ գեղջուկները իշխանների պէս պաշտեն քաղաքացւոց:

Բայց մինչ ամրոցը և պարսպապատած տեղն էլ կարող էր քաղաք անուանել, լինում էին և մեծ քաղաքներ: Շամիրամը, օրինակ, հաւանելով Այրարատ դաշտի հարաւային լեռնակողմերը, մտածում է այդտեղ քաղաք և ապարանք [1]) շինել բնակութեան (Խոր. եր. 54). և այսպէս էլ անում է, և քիչ տարիներից յետոյ աւարտում է հրաշալի շինութիւնը պղնձէ ամուր դռներով. նմանապէս «զարդարէ դաստակերտօք, և տաղարթիւք ծառոց վարսաւորաց» (Խոր. եր. 57) [2]) «և անթիւ բազմութիւն մարդկան ի ներքս բնակեցուցանէ» (Խոր. եր. 57) [3]):

Քաղաքները շինողների սեպհականութիւնը կարող էին լինել, և այդ պատճառով ասում էին «քաղաք Շամիրամայ» (Խ. եր. 117), «քաղաքն Երուանդայ (Խոր. 265) Զարիշատը արքունական քաղաք էր (Խոր. 312)» Մծբինը շինելու համար Սանատրուկը իւր բոլոր գանձերը ծախեց (Խոր. 168):

Երբ Թագաւորն էր նստում քաղաքում, ասում էին արքայանիստ քաղաք (Խոր. 229): Քաղաքը կարող էր յատկացրած լինել զօրքին կամ բագիններին. օրինակ ասում էին, քաղաք տեղի բնա-

---

1) Քաղաք և պալատ շինեմք... (Խ. Ծ. վ. Ս. եր. 47):

2) Զարդարում է շինութիւններով, տերևալի ճիւղաւոր ծառերով, (Խ. Ծ. վ. Ս. եր. 49):

3) Եւ բնակեցնում է նորա մէջ մարդկանց անթիւ բազմութիւն (Խ. Ծ. վ. Ս. եր. 50):

կութեան վերջին հայից (Խոր. 144), քաղաք Բագնաց (Խ. 174, 175)։

Քաղաքի մէջ, ինչպէս տեսանք, կարող էր և ժողովուրդն էլ նստել, այդտեղ կարող էր և թագաւորը նստել. այդ պատճառով այն քաղաքամասը, ուր թագաւորն էր նստում, ասում էին արքունիք։ Ժողովրդի նստելու տեղը աւան էր, օրինակ «յաւանի ի քաղաքին Տիգրանակերտի», ասում է Փաւստոս (եր. 187)։ Կը տեսնենք, որ գերիներին կամ պատկանելի մարդկանց նստացնում էին գիւղում, ուր կարող էր ապարանքը, նմանապէս և բերդը լինել, ինչպէս Բախ գիւղում ապարանք կար (Փ. 182) և այլն։ Գերութիւնը գիւղ խօսքի հետ կապուած է. և ուղիղ, Վարդգէսի աւանում, երբ Տիգրանը հրէից գերութիւնը նստեցրեց, այդ տեղը անուանեց աւանագիւղ, իսկ երբ Վաղարշակը պարսպով պատեց՝ այդ տեղը անուանեց Վաղարշապատ կամ Նոր քաղաք։

Ուրեմն ժողովրդի նստած տեղը աւան էր, իսկ երբ այդ տեղում և գերութիւնն էլ է նստում, գիւղ խօսքն էլ է աւելանում։ Եւ երբ այդպիսի տեղը պատում էին, քաղաք էր դառնում։

Երբ աւանը մէկին էր պատկանում, դա նորա գիւղն էր անուանւում. օրինակ, սուրբ Ներսէսի մարմինը տարան «ի Թիլն յաւանն յիւր գիւղն (Փաւ. եր. 184)։ Աւան խօսքը մի ընդհանուր նշանակութիւն ունէր, դա ժողովրդի բնակւելու տեղն էր։ Երբ գերին կամ պատկանելի մարդն էր այդտեղ նստում, դա տիրոջ գիւղն է. բայց աւանում կարող էր և շէնը նստել, ինչպէս որ էր և քաղաքում. այդ դէպքում ասում էին «շինանիստ քաղաք» կամ «շինանիստ աւան» կամ «շէն աւան»։

Խորենը աւերում է, օրինակ, պարսից երկիրը «զշինանիստ քաղաքացն և աւանացն ցանկալեաց, զշէն երկիրն ամենայն թափուր և աւերակ թողոյր (Ագաթ. 29)։ Ծծմայրը, օրինակ, Արտաշէսի Սանատրուկ մանկանը փախցրուց «ի շէնն Ամբատաւանի» (Խոր. 170)։

Բայց աւանը ոչ շէնն էր և ոչ գիւղը։

Արտաւազդը հանել էր, օրինակ, Մուրացաններից նրանց գիւղերը, բերդերը և ապարանքները, բայց դրանով չբաւականանալով, գրաւում է և դրանց բոլոր շէները։

Մանաւանդեան տոհմի իշխանի ապստամբութեան պատճառով Խոսրով թագաւորը նւիրում է եկեղեցուն «զաւանն և զգաւն զա-

հօյից գիւղն Նախճաւանի Մանաւազկենից... զՄանաւազակերտ ամենայն սահմանօքն և գաւառականն հանդերձ՝ որ շուրջ զնովաւ էր» (Փաւ. եր. 9)։

Ուրեմն չենք սխալուիլ եթէ ասենք, որ կային շինանիստ կամ շէն աւաններ, ուր ժողովուրդն էր բնակւում, և կային գիւղ դարձած աւաններ, որոնք մասնաւոր անձերի սեփականութիւնն էին դարձած. վերջիններում պատկանելի և կամ ստրուկ մարդն էր նստում։

Այս պատճառով բնակավայրերը Արշակունեաց ժամանակ երկու տեսակի էին բաժանւում. կային շէն, կային և անշէն տեղեր։ Օրինակ Ագաթանգեղոսը (եր 486) ասում է «զունդս վանականաց ի շէնս և յանշէնս...հաստատէր» Փաւստոսը (եր. 193, 194) ասում է, որ Սրբոյն Ներսէսի օրերով «կարգ վանականաց և ի շէնս և յանշէնս... ծաղկեալ» էր։

Միւս կողմից Արշակունիներից կարգած նախարարները նոյն ժողովրդի միջից դուրս եկած շէների և գաւառների անունով կոչուած տէրեր էին (Խոր. եր. 115)։

Նոյնն էին նոքա, որոնք շէն էին պարգև ստացել։

Վաղարշակը, օրինակ, իւր ուստրներին բնակեցնում է Հաշտեանք և նրա գաւառներում, «ի նոսա թողլով զշէնս ամենայն, հանդերձ յաւելուածով մթից առանձինն ռոճկաց կարգելոց յարքունուստ (Խ. 118) [1]։

Արտաշէսը իւր եղբայրներին և քոյրերին ժառանգեցնում է Աղիովտի և Առբերանից գաւառների վրայ «Թողլով ի նոսա զմասն արքունի որ ի շէնս այնմ գաւառաց, հանդերձ առանձին մթից և ռոճկաց (Խ. եր. 140) [2]։

Վաղարշակը Վարժ անունով պատանուն «շէնս պարգևեալ նմա առ Հրազդան գետով, յանուն նորա կոչի ազգն Վարաժնունի» (Խ. 122) [3]։

---

[1]) Նոցա թողնելով բոլոր գիւղերը, աւելացնելով առանձին եկամուտ և թագաւորական գանձից նշանակուած ռոճիկ (Խ. ծ. վ. Ս.)։

[2]) Թողնելով նոցա այն գաւառների գիւղերում եղած արքունական մասն առանձին եկամուտով և ուտելիքով (Խ. ծ. վ. Ս. եր. 119)։

[3]) Նա գիւղեր է պարգևում նորան Հրազդան գետի մօտ, նորա անունով. նորա ազգը Վարաժնունի է կոչւում (105)։

Գարաղին և Արեղին Վաղարշակը «շէնս պարգևէ նոցա, յորոց և անուն կոչին. այսպէս և Նախարարութիւնքն՝ Արեղեան և Գարեղեան» (Խ. 110) [1]։ Արտաշէսը պարգևեց Սմբատին «զմասն արքունի, որ ի շէնս Գողթան և զՈւղտոււ Ակունս» (Խ. 155) [2]։

Այս օրինակներից մենք տեսնում ենք, որ շէնը չէր նշանակում անձնաւորութիւնները, ընտանիքները կամ գիւղերը, դաստակերտները և աւանները. որովհետև այդ դէպքում դրանք որոշուած կը լինեն թւով, անունով, սահմաններով և այլն։ Պարգևել շէն, չյիշելով, որ դա այս ինչ կամ այն ինչ գաւառն էր բունել, կամ որոշ գետերի ափերումն էր, կամ մինչև անգամ չորոշելով այդ շէնը— նշանակում է տալ գաւառի կամ գետի ափերի բնակիչներին կամ ժողովրդին։

Պարգևել Գարաղին և Արեղին շէնը, չյիշելով դրա տեղը, ինչ լինելը և այլն, և երբ դրանց նախարարութիւնները այդ շէների անունով էին կոչւում, նշանակում է, որ այդ շէները իրանց ցեղի ծնունդի կամ կլանի անունները ունեցող ժողովուրդներ էին։ Ժողովուրդը այդ ժամանակ ցեղակցութեամբ էր որոշւում և մինչև անգամ մեր ժամանակներում քրդերի, թարաքամաների և այլոց մէջ մարդիկ ցեղակցութեամբ են որոշւում. օրինակ ասում են «Ջիլանլու, Դարզելու, Սոփուլու, Այրում, Իմիրզասանլու և այլ ցեղերի քրդեր կամ թարաքամաներ։ Սրանք իրանց ցեղի անունները կրող ժողովուրդներ են։ Նմանապէս Արշակունեաց ժամանակ պարգևել շէնը և կամ ժողովրդի վրայ նախարարներ և կառավարողներ նշանակել շէների և կամ գաւառների անունով, նշանակում էր պարգևել ժողովուրդը, որ ցեղական կազմակերպութեան մէջ էր և հաւաքական մարմին էր կազմում։

Մինչև Տրդատի օրերը շէնը դասակարգ էլ չէր կազմել,—չկար շինականը, կամ շէնի մէջ անձնաւորութիւնները մէկը միւսից չէր էլ ջոկւում։ Շինական խօսքը մեր մատենագիրները Տրդատի ժամանակից են գործ ածում։

---

[1]) Նա պարգևում է նոցա գիւղեր, որոնց անունով և կոչւում են նոյնպէս և նախարարութիւններն—Գաբեղեան Աբեղեան։

[2]) Արտաշէս նորան տալիս է արժանի պարգև, թագաւորական հողերի մասն Գողթնի գիւղերում և Ուղտոււ ակունքը (Խ. Ճ. Վ. Ա. 165).

Շէները, ենթարկւելով տէրերի իրաւասութեան, այն աստիճան չտկարացան և սպասաւորաց շարքը չընկան, ընդհակառակը՝ անցից մի ուժեղ դասակարգ առաջ եկաւ։ Դրանք իրանց ոյժը, նւակութիւնը և տոհմապետներ ունէին, տէրութեան գործերին էին խառնւում, ունենում էին իրանց կալւածքը, զօրքեր էլ էին լիս տէրութեան։

Այստեղ միայն մի քանի օրինակներ կը բերենք մեր ասածները ստուգելու համար։

Թագաւորները, դիմելով ժողովրդին, միշտ իրանց հրովարտակով դիմում էին և շինականներին։ Տրդատը, օրինակ, դիմում է ւ աշխարհս և առ գաւառս, առ նախարարս, առ զօրս և առ ականս և առ ամենեսեան»... (Ագաթ. եր. 86)։

Արշակի տուած չարչարանքների առաջն առնելու համար, Սուրբ ռէսի մօտ ժողովւեցան «մեծամեծք, նախարարք, կուսակալք, մնակալք, գաւառատեարք և դասապետք շինականաց» (Փ. 136). րսից մարզպանը, իւր հրովարտակով համոզում է «ազատներին», նականներին» և «եկեղեցականներին» որ նրանք դառնան իրանց կութիւնները և ասում է. «զինչ կեանս և թողեալ իցեն եկես- և կալցեն զիւրաքանչիւր զարար... Որ և փազում իսկ եկին... ալան զիւրաքանչիւր կալւած» (Եղիշէ 261, 262)։

Թէև դասակարգերը կազմւելուց յետոյ շինականները «ռամիկ» ւնն էին ստացել և ջոկ ռամկապաս զօրք էլ կար, բայց հազապետը ժողովրդականների հայրն էր համարւում, տէրութիւնը ածում էր իւր խնամքը շինական դասակարգի վրայ։ Ահա ինչ սում Փաւստոսը (եր. 56) հազարապետութեան մասին. «Եւ ըն գործակալութեան հազարապետութեան, աշխարհատես խնաալութեան, աշխարհաշէն դէհկանութեան, շինականաշէն ազգն ենաց»։

Շինականները ուրախութեամբ էին պատերազմ դուրս գալիս դանանց ժամանակ ընդհանուրի շահը պահպանելու համար։ նց աղքատացնելով և հարկերով ծանրաբեռնելով էին Պարսիկ- ցանկանում հայերին մօտութիւնը ընդունել տալ։ Հայաս- ամուր լեռներում և երկիրներում, ուր տէրերը չէին կարող ընկճել ժողովուրդը, սա բնակիչ անւամբ էր յայտնի։ Դրանք

*մինչև Բագրատունեաց ժամանակ էլ իրանց ազատութիւններից շատերը պահպանել էին։ Խուլթ լեռան բնակիչները իրանց ցեղական կազմակերպութիւնն անգամ պահպանած էին Արաբացոց ժամանակ, և այդ մի բուռն ժողովուրդը կարողանում է յաղթել Արաբացոց զօրաբաժնին։ Սլկունեաց նահապետը ապստամբում է Տրդատի դէմ «ապաւէն առնելով իւրանց զբնակիչս Սիմն կոչեցելոյ լերին... «Խոր» (եր. 249). Կորդուաց, Կորդեաց, Տմորեաց, Մարաց և Արցախայ «ամուր աշխարհների և երկիրների բնակիչները ինքնագլուխ ապստամբութիւն սարքեցին Արշակ Թագաւորի դէմ (Փ. 135, 136)։ Այս օրինակները մեզ ցոյց են տալիս, որ ամուր լեռնային երկիրներում բնակիչը իւր ոյժը և նշանակութիւնը չէր կորցրած։ Դրանք մինչև անգամ Բագրատունեաց ժամանակ չէին կազմում դասակարգ և եթէ իբրև ստորադրեալ ժողովրդի մտքով շէն էլ անուանւէին, բայց իրանց շատ իրաւունքները պահպանել էին։*

*Շէնը ուրեմն կարելի է որոշել հետևեալ կերպով։ Դա կլանն էր գերութիւնից կամ ստրուկ կանանցից մայրական ընտանիքի միջոցով գոյացած։ Շէնը ցեղի ստորադրեալ մասն էր, որովհետև ցեղի հարազատ արիւն ունեցողներիցն էին միայն գլուխ կանգնածները և ազնւականները առաջ եկել և Արշակունեաց ժամանակ շէն խօսքը ստորադրեալ ժողովրդի մտքով էր գործածւում, և ոչ թէ ստրուկի, սպասաւորի, գեղջուկի և կամ պատկանելիի մտքով։ Աւելորդ չենք համարում կարճ կերպով մտաբերել այս գլխի իմաստը և յետոյ էլի դառնալ մեր առարկային։*

*Նախ մենք տեսնում ենք որ Հայկից ուղիղ գծով ծագած Արմենակը, Ամասիան, Արմայիսը, Գեղամը, Հարման, Արամը մի տեսակ առաւելութիւն էին, վայելում իրանց ցեղակիցների վերայ, պատերազմներին դրանք առաջնորդում էին, սահմաններ էին կտրում, ծնունդներն էին տեղաւորում և այլն։ Սրանք էին ազգերը, այսինքն իշխողները կամ ցեղապետները և կամ սրանց կարելի է և նախարարներ էլ անուանել, ինչպէս Խորենացին այդ տիտղոսը Հայկին է վերագրում։ Կադմոսը, Խոռը, Մանաւազը, Բազը, Փառոխը, Ցոլակը, Շարան և Սիսակը ծնունդներ էին։ Բայց Խորենացին շատ տեղեր միայն ցեղերի և ծնունդների անունները տալով դրանով*

այդ ցեղերը և ծնունդներն էր հասկանում այնպէս, ինչպէս մենք տեսանք, որ Հարմա ասելով նա հասկանում էր Հարման իւր ցեղակիցներով կամ ծննդակիցներով։

Այնուամենայնիւ Խորենացին տեղ տեղ այդ ծնունդների կազմութեան վերայ քիչ շատ գուշակել է տալիս։ Այս ծնունդների գլուխ կանգնածները տարածւում էին որը աղխով, որը ընդոծիններով և որն էլ իր ծառաներով։ Դրանք իրանց սների բռնած տեղերի կամ մօտակայ գետերի և լեռների և մինչև անգամ ծովերի և իրանց բռնած գաւառների և աշխարհների վերայ իրանց անունն էին դնում և այդ տեղերը ժառանգում էին։ Բայց մենք տեսնում ենք, որ Հայկազանց ցեղի կազմութեան մի մասն էլ, բաժանւելով ցեղից, ոչ թէ իբրև ջոկ ծնունդ այլ իբրև բնակիչ նոր տեղ նստեց. և դրանք «շէն» անւանեցան։

Եւ մենք եկանք այն եզրակացութեանը որ դա կլանն էր։

Կլանը սկզբում շէնն էր։ Այդ եզրակացութեանը մենք եկանք և ուրիշ եղանակով։ Շէնը առհասարակ թէ Արշակունեաց և թէ Հայկազանց ժամանակ, ինչպէս մենք տեսանք, ոչ գիւղը, ոչ դաստակերտը, ոչ աւանը և քաղաքը և ոչ առհասարակ որ և իցէ բնակավայրն էր։ Շէնը՝ սորուկը և սպասաւորը չէր, այլ նա լաւ իրաւունք էլ էր վայելում։ Վերջապէս շէնը դասակարգի պատկանող ժողովուրդն էլ չէր, որովհետև շէնը դառնում է մասամբ իբրև դասակարգ միայն Տրդատի ժամանակ, երբ շինական խօսքն էին սկսել գործածել։

Բայց տեսանք, որ առաջի Արշակունիների ժամանակ պարգևել գաւառում եղած արքունի մաս կամ բոլոր շէնը կամ անուն ունեցող և կամ գետի ափերում բնակւող շէնը կարող էր նշանակել թէ պարգևւում էր ժողովուրդը, որը բռնած ունէր գաւառը կամ գետի ափերը և կամ անուն ունէր, այսինքն ցեղական կազմակերպութեան մէջ էր և որը հաւաքական մարմին լինելով այդ ցեղի անունն էր կրում։

Շէնը պարգևել կամ տալ, կամ շէնի անունով տէրեր նշանակել նոյնն էր թէ այդ ժողովուրդների վրայ տէր նշանակել, ինչպէս Մուշանը ոչ թէ Մուրացան տէր, այլ Մարացոց տէր էր անւանւում։ Շէնը կամ կլանը ցեղի ստորադրեալ մասն էր, որովհետև ցե-

ղի հարազատ արիւն ունեցողներից էին միայն գլուխ կանգնածները և ազնուականները առաջ եկել։

Երբ շէնը հարազատներից դեռ ջոկուած չէր, դրանց անդամները միատեսակ մանգունք անունն էին կրում, բայց շէնը, հարազատներից բաժանուելով՝ ջոկ, մերձաւոր ցեղ էր կազմում։

Անտարբակոյս կլանների միջոցով էին առաջ եկել այսպիսի ընտանեցած ցեղեր՝ մարք, իւերացիք, քանանացիք, հրէայք, Սանասարեանք, Սենեքերիմեանք և այլն, որոնք հայերի հաւասար իրաւունքներ էին վայելում Հայկազանց շրջանի վերջում և դրանց պէս էլ պարտականութիւններ էին կրում, խառնուելով հայոց գործերին և այլն։

Հարազատ ցեղերից յայտնի էին Սիսակայ, Կադմեայ, Խոռայ, Գաքսամայ, Տորքայ, Զոփաց, Որդունւոյ և այլ ցեղերը, որոնք ծնունդներից էին գոյացել։

Սկզբում ցեղի և շէնի անդամները միատեսակ մանգունք անուամբ էին յայտնի։

Երբ շէներից մերձաւոր ցեղեր կամ ստորադրեալ շէներ առաջ եկան, այդ ժամանակ անձնաւորութիւնները սկսեցին միմեանցից զաւակակցութեամբ զանազանուել։ Զաւակը ծագմանն է վերաբերում։

Օտարածինները մերազնեանալով իրանց մայրական անունը և ծագումն էին իրանց վերայ պահում՝ իրանց մայրական ցեղերի զաւակներ անունն էին կրում։

Հարազատ զաւակներից ազնուականները առաջ եկան, և սկզբում դրանք ազգեր և ծնունդներ էին անւանւում։ Երբ հարազատ և մերձաւոր ցեղերը միմեանցից բաժանուեցան, առաջիններից գոյացածները ազգեր և տոհմեր սկսեցին անւանուել։

Տոհմերը նոյն ցեղական կազմակերպութեան մէջ էին և սնովի էին ապրում։

Մերձաւոր ցեղերիցն էլ յետոյ ազգեր և տոհմեր առաջ եկան։

## V

*Հայկազանց ժամանակ ծագած իրաւունքները։ Յաղթութեամբ կամ ուժով առած երկիրները։ Երկրի և կալուածքի իրաւունքը։ Հարկի ծառայութիւնը։ Իրաւունք գերիների վերայ, լուծ։ Հայկազանց ցեղերի ներքին յարաբերութիւնները։ Ծառայութիւնը հպատակութիւնն է։ Այդ իրաւունքների բացատրութիւնը Արշակունեանց ժամանակ։ Ծառայութեան տեսակները նոյն ժամանակամիջոցում. սեպհականութիւն, տրուկ, սպասաւոր, գեղջուկ։ Հայկազանց ժամանակ ծագած երեք տեսակ՝ տէրութեան, իշխանութեան և սեպհականութեան՝ իրաւունքները։*

Ինչպէս տեսանք, Հայկազանց ծնունդները հէնց սկզբից ամեն մէկը որոշ երկիր էր բռնել. ցեղապետների կարգադրութեամբ դրանք իրար մէջ սահմաններ էին որոշել։ Իրանց բռնած տեղերը իրանցն էին համարում և իբրև ժառանգութիւն այդ ունեցածը անցնում էր յետագայ սերունդներին։

Այդ ծնունդները հետզհետէ իրանք էլ նոր ցեղերի էին փոխւում. դրանց մէջ լինում էին թէ հարազատ և թէ մերձաւոր ցեղեր։ Ազնուականները, ցեղապետները և ծնունդների գլուխ կանգնածները հարազատներիցն էին։ Երկիրը ժառանգելու իրաւունքը մնում էր թէ հարազատ և թէ մերձաւոր ցեղերի ձեռին։ Բայց, բացի ժառանգութեան իրաւունքից, կար և կալուածքի իրաւունք։ Հէնց առաջին քայլափոխում Հայկը հնազանդեցրեց տեղացոց, շինեց «տուն բնակութեան կալուածոց» և այդ տեղերը տուաւ Կադմոսին։ Արմենակի բնակութեան տեղն էլ նստած կային տեղացիք, և Արմենակը իր բռնած տեղը նոյնպէս կալուածք է անուանում։

Արժանի է ուշադրութեան, որ Հայկազունք միայն իրանց այս բռնած տեղերն էին կալուածք անուանում, ուր իրանցից առաջ բնակւած էին տեղացիք, կամ օտար ցեղի մարդիկ. և որովհետև ցեղերը հետևում էին մէկը միւսի վերայ բռնանալու, յայտնի բան է որ Հայկազունք էլ էին բռնանում այն տեղացոց վերայ, որոնք իրանց հնազանդւել էին և իրանց վերաբերեալ օտար էին. հէնց այդ պատճառով դրանց բնակւած տեղը իրանց կալուածքն էին համարում։ Թէ ինչ յարաբերութիւններ էին ծագում Հայկազանց և օտարածինների մէջ, երբ առաջինները բռնանում էին վերջինների երկրի վերայ տեսնենք Խորենացու հետևեալ հատւածներից։

Արամի օրով, օրինակ, Մեդացի Նիւքարը...«զսահմանս Հայոց ծառայեցոյց ամս երկուս... Արամ... զՆիւքարն... ձերբակալ արարեալ... և զաշխարհն նորա... ի ծառայութեան հարկի կալաւ» (Խոր. եր. 96)։ Միւս տեղ ...«Բարշամ անուն՝ սաստկագոյն նեղեալ հարկաց խստութեամբ, անապատ զբովանդակ շրջակայն իւր առնէր»... Արամը սրան հալածում է... «իսկ զմեծ մասն դաշտացն Ասորեստանի կալաւ ի ծառայութիւն հարկի... Արամ բազում ժամանակս (Խոր. 47)։ Պատահէ նմա (Արամին) Պայապիս, որ բռնացեալ ունէր զմիջոց երկուց ծովուց... զՊոնտոսն և զՈվկիանոսն։ Որում ի դիմի հասեալ վանէ... Եւ ինքն թողեալ զոմն Մշակ անուն յազգէ իւրմէ, և բիւր մի ի զօրաց իւրոց ի վերայ աշխարհին... Ընդ նմին օրինակի ի տեղեացն այնոցիկ մինչև ցբուն իւր սահմանն, զբազում անբնակ երկիր ելից բնակչօք, որ երկրորդ և երրորդ անուանեցան Հայք, այլ և չորրորդ (Խոր. եր. 48, 49) [1]։

Այս օրինակներից երևում է, որ երբ օտարն էր բռնանում Հայոց սահմանների վերայ, նա հարկով էր ծառայեցնում, կամ նեղում այդ տեղի բնակիչներին կամ ժողովրդին։

Երբեմն այդպիսի հարկով նեղացնելը այն աստիճան խիստ էր լինում, որ այդպիսի տեղերը անապատ էին դառնում։ Հաւանական է, որ այդպիսի տեղերում օտարը իր ուժի չափ տեղացիներից առնում էր նոցա կայքը, անասունները և կարելի է մինչև անգամ

---

[1]) Արամը պատահում է Հայաստանի սահմաններում մեդացի երիտասարդներին, որոնց առաջնորդում էր Նիւքար ոմն, Մադէս կոչմամբ—սա... երկու տարի ծառայեցրեց իրան մեր երկիրը։ Արամը... գերի բռնելով նոյն ինքն Նիւքարին... իսկ նորա աշխարհը... հարկի տակ դրեց (40). Նա գտնում է իւր երկրի մի ապականիչ, Բարշամ անունով, ...Սա իւր շրջակայքը սաստիկ նեղացնելով խիստ հարկերով, անապատ էր դարձնում բոլոր այն տեղերը... Արամը երկար ժամանակ հարկի տակ պահեց Ասորեստանի դաշտերի մեծ մասը (42). այստեղ դուրս է գալիս նորա (Արամին) առաջ պատերազմով... Պայապիս... որ տիրապետել էր սոյն աշխարհին, երկու մեծամեծ ծովերի—Պոնտոսի և Ովկիանոսի— մէջ գտնուած բոլոր երկրին։ Գալով սորա վերայ, Արամը քշում է նորան (դէպի ասիական ծովի մի կղզին)... և թողնելով իւր ազգից մի ոմն Մշակ անունով 10,000 զօրքով այն աշխարհին վերակացու... Այս կերպով, այնտեղից մինչև իւր բուն սահմանները, որոնք կոչուեցան Երկրորդ, Երրորդ, նաև Չորրորդ Հայք։

դրանցից գերիներ էլ էր վերցնում։-Հայերը նմանապէս բռնանալով օտարի երկրի վերայ, դրանց հարկի ծառայութեան տակ էին պահում Սիսական և Կադմեան ցեղերը, որոնց Արամը յանձնել էր արևելեան և հարաւային նուաճած կողմերը, հաւանական է, որ այս եղանակով էին վարւում այն տեղերի օտարածինների հետ։

Երկրորդ, Երրորդ և Չորրորդ Հայք անուանեալ տեղերի վերայ առաջ ուրիշներն էին բռնացած։ Հայերը դրանց վանելով, դրանց տեղն են բռնում։ Հայ բնակիչը կամ հայ շէնը ամայի տեղերումն է նստում, իսկ զօրքը կողմնապետի առաջնորդութեամբ մնում է այդ տեղերը պահպանելու։ Խորենացին ցեղը և գունդը շատ տեղ չի զանազանում, վասն որոյ գունդ, ցեղ և կամ զօրք մեր կարծիքով միևնոյն նշանակութիւնը պիտի ունենային։ Ուրեմն զօրքը կամ ցեղի հարազատ մասը կողմնապետի առաջնորդութեամբ կալուածքի իրաւունք էր ձեռք բերում, բռնանալով նոր երկրի վերայ. իսկ իրանց շէնն էլ այդ ամայի տեղերը բռնելով՝ ժառանգում էր։

Հետևապէս այդպիսի նոր տեղերի վերայ բռնանում էին Հայկազեաններից հարազատ ծագումն ունեցողները և, ինչպէս Կադմոսը և Արմենակը, այդպիսի տեղերը իրանց կալուածքն էին համարում։

Այլ էր լուծը։ Ահա ինչ է գրում Խորենացին դորա մասին. Տիգրանը ...«արանց կացեալ գլուխ, և արիութիւն ցուցեալ, զազգս մեր բարձրացոյց. և զընդ լծով կացեալսն՝ լծատերս և հարկապահանջս կացոյց բազմաց» (Խոր. եր. 75)։ Լուծը հարկի ծառայութիւնը չէր։ Հարկով ծառայեցնում էին օտար ցեղը, երբ նրա երկիրն էին գրաւում և իբրև գերի չէին վերցնում նրանց։ Բայց Տիգրանի ժամանակ մի ամբողջ ազգ և կամ ցեղ գերի բերին։ Յաղթողի յարաբերութիւնը դրանց վերաբերեալ այլ էր և, կարծես, լուծ խօսքով էր որոշւում։ Այդ գերութեան մասին մի թեթև գաղափար տալու համար, այստեղ առաջ կը բերենք Խորենացու հետևեալ հատուածը։ «Իսկ զԱնոյշ զառաջին կինն Աշդահակայ և զբազումս ի սերմանէ Աշդահակայ աղջկունս՝ հանդերձ պատանեկօք և այլ բազում գերեօք, որչափ թէ աւելի քան զբիւր մի, բնակեցուցանէ յարևելեաց ուսոց մեծի լերինն՝ մինչև ի սահմանս Գողթան, որ են Տամբատ, Ոսկիողայ, Դաժգոյնք, և որ այլք առ եզերբ գետոյն ատափերայք, յորոց մինն է Վրանջունիք, մինչև հանդէպ ամրոցին

Նախճաւանու. և զերիս աւանսն զԽրամ և զՋուղայ և զԽոշակու-նիս։ Իսկ ի միւս կողմանէ գետոյն զբոլոր դաշտն, որոյ գլուխն Աժ-դանական, մինչև ցնոյն ինքն ամուրն Նախճաւանայ» (Խոր. եր. 86, 87) [1]։

«Լուծ» մեր լեզւով նշանակում էր ծանր բռնութիւն, չարաչար նեղութիւն և այլն և մինչև անգամ անասուններին էր վերաբերում։ Յայտնի բան է, յաղթողը կարող էր գերիներին աւելի խիստ և չարաչար նեղել և լուծի տակ պահել, քան թէ նրանց, որոնք թէև յաղթւած էին, բայց գերի չէին ընկած։ Ասորիները յաղթեցին Հայերին և հաւանական է որ սրանց հարկի ծառայութեան տակ դրին և ոչ թէ լուծի, որովհետև հայերը շարունակում էին իրանց առաջնորդներով կամ նահապետներով կառավարւել։ Արամը և Արան Նինոսից և Շամիրամից երկրորդական պատիւ ունէին ստացած։ Արայ Գեղեցիկի որդի Արան՝ Շամիրամի կողմից կարգւած էր մեր աշ-խարհի վերակացու (Խ.66)։ Անուշաւան մեր երկրի հարկը ժողովե-լով՝ կառավարելու իրաւունքն էր ստացել (էջ 67) և այլն։

Այնու ամենայնիւ ասորիները, ինչպէս երևում է Վանայ ար-ձանագրութիւններից, շատ էին նեղում հայերին, մինչ հայ ցեղա-պետները և առաջնորդները սրանց ժամանակ կառավարողներն էին։ Պարոյրը, ինչպէս գիտենք, անկախութեան հասաւ և մեր նախարար էր անւանւում։

Այսպիսով մենք տեսնում ենք, որ յաղթողը յաղթւածի երկրի, աշխարհի կամ սահմանների վրայ մի տեսակ երկրի կամ կալւածքի իրաւունք էր ստանում, որով հարկի ծառայութեան տակ էր պա-հում այդ յաղթւած ժողովրդին։

---

[1]) Իսկ Անուշին, Աժդահակի առաջին կնոջ և նորա ազգից ուրիշ շատ աղջիկներ պատանիներով և ուրիշ գերիներով, տասն հազարից աւե-լի, Տիգրանը բնակեցրեց մեծ սարի արևելեան կողմում մինչև Գողթնի սահմանները, այսինքն Տամբատի, Ոսկիողի, Դաժգոյնքի մէջ, և գետի ափի մօտ ուրիշ գիւղերի մէջ, որոնցից մին է Վրանջունիք, մինչև Նախի-ջևան ամրոցը։ Նոցա տալիս է նոյնպէս երեք քաղաքներ, Խրամ, Ջուղայ և Խոշակունիք, իսկ գետի միւս կողմից տալիս է բոլոր դաշտը, որը սկսւում է Աժդանականից մինչև նոյն Նախիջևան ամրոցը։ (Խ. ծ. վ. Ա. եր. 73—74)։

Բայց գերի բերած ժողովրդին լուծի, այսինքն չարաչար հարստահարութեանց, տակ էին պահում։

Այսպէս վարւում էին Հայկազունք օտարների հետ, երբ դրանց յաղթում էին, դրանց երկրի վրայ կալւածքի իրաւունք էին ստանում, իսկ երբ գերի էին բերում, լուծի և ստրկութեան տակ էին պահում։

Դառնանք և քննենք Հայկազանց ներքին կեանքը։ «Ցեղապետներին և գլուխ կանգնածներին վերաբերեալ միւս ցեղակիցները, կարելի է կարծել, հպատակներ էին։ Տիգրանը, օրինակ, «յուղարկէ թագաւորապէս զքոյր իւր Տիգրանուհի մեծ ամբոխիւ ի Հայս, յաւանն զոր շինեաց իւրով անուամբ Տիգրան, որ է Տիգրանակերտ, և զգաւառսն զայնոսիկ ի ծառայութիւն նմա հրամայէ» (Խ. եր. 86)։ Միսակը հօրից ստացաւ «ծառայս անձինս բազումս»։ Միսակը և Տիգրանուհին գլուխ կանգնեցան ոչ թէ յաղթւած, այլ իրանց ժողովրդի վերայ, որը ծառայութեան պարտականութեամբ էր կապւած սրանց հետ։ Նիւթերի սակաւութիւնը մեզ թոյլ չի տալիս մանրամասն կերպով պարզել այդ յարաբերութիւնը Հայկազանց հարստութեան ժամանակ։ Այս պատճառով հարկ ենք համարում մի հայեացք ձգել թէ ինչ էին նշանակում «հարկի ծառայութիւնը», «ծառայութիւնը» և «լուծը» Արշակունեաց ժամանակ։ Կարծում ենք այդ առարկաները աւելի կը պարզւեն, երբ կը քննենք դրանց յաջորդող կերպարանափոխւած աստիճանները և յետագայ եղածների օգնութեամբ կը հետևենք նկարագրել այդ առարկան։

Արշակունեաց ժամանակ կար «ծառայութիւն», «ծառայութիւն վաստակի», «հարկի ծառայութիւն», «ստրկութեան ծառայութիւն» «սպասաւորութիւն» և այլն։ Ծառայութիւնը կամ վաստակի ծառայութիւնը՝ հպատակութիւնն էր։ Այդպիսի ծառայութիւնը մի տեսակ պաշտամունք էր, գլխաւորապէս կրտսերից մեծին, կամ թագաւորին։ Հետևեալ օրինակները կարող են աւելի պարզել այդ։

Աղձնեաց բդեշխ Վաղինակ Սիւնին ...«հանդերձ աշխարհաւն և ամենայն ուժովն կայր բդեաշխն Վաղինակ ի ծառայութիւն արքային հանապազ» (Փ. եր. 19) ...«մի ոմն ի նախարարաց մեծամեծացն, Մերուժան անուն Արծրունի... չոգաւ եկաց առաջի թագաւորին պարսից Շապհոյ, և դներ ընդ նմա ուխտ երդմամբ, զի յաւի-

տեան ծառայ լիցի նմա» (Փ. եր. 118)։ Հայերը նկզանալով իրանց թագաւորից ցանկանում էին Շապուհին ծառայել «զի ինա ձեռս տայցեն, և զնա պաշտեսցին և նմա միամտութեամբ ծառայեսցին և տացեն նմա աշխարհս հայոց (206)։ Նախարարները գրում են Յազկերտին՝ «և հարքն մեր և հաւքն հարցն մերոց կային ի ծառայութեան վաստակս և սիրով կատարէին ամենայն հրաման բանին նորա և յայնց ժամանակաց մինչեւ քո հարենի աթոռդ՝ և մենք զայն ծառայեցաք, բայց քեզ լաւագոյն քան զաւաջնոյն (Եղիշէ 84. 85)։ Կոստանդինը թագաւորեցնում Խոսրովին և գրում է՝ «մեզ ծառայեսջիք միամտութեամբ (Խորենացի երես 283)։ Ներսէսի ձեռքով Արշակը պայման է կապում նախարարների հետ՝ «թագաւորն վարեսցի ուղղութեամբ և նոքա ծառայեսցին միամտութեամբ» (Խորենացի, երես 342)։ Այս օրինակներից մենք տեսնում ենք, որ ծառայութիւնը այն յարաբերութիւնն էր, որ ծագում էր տիրոջ և հպատակի մէջ։ Ծառայութիւնը կարող էր լինել և յաւիտենական։ Նախարարները, բդեշխները, իբրև հպատակներ, ծառաներ էին համարւում։ Ծառայութեանը կարելի էր ենթարկւել աշխարհով և ուժով։ Հպատակի գլխաւոր պարտականութիւններից մէկն էր միամտութեամբ ծառայելը։ Հպատակի պահանջն է, որ տէրը վարւի ուղղութեամբ։ Օտար տէրերին ծառայելը աւելի ծանր էր, մանաւանդ հեթանոսներին։ Յունաց կայսրը գրում է պարսից թագաւորին «թէ կարասցես յաղթել նոցա և արկանել ի ծառայութիւն ես ի թիկունս ոչ եկից նոցա»։ Շապուհը գերելով երկիրը և յետ դառնալով «յերկրին հայոց ոստիկանս և վերակացուս թողւին ի ծառայութիւն մնանել զմնացորդս երկրին»։ Արշակը ջհու համարեց ծառայել քրիստոնեայ թագաւորին «և ոչ յօլովեց իշխել և մնանել ընդ լծով հեթանոսաց» (Խ. 347)։ «Թող ծառայեսցուք թագաւորին յունաց, կայցուք ի հնազանդութեան իշխանութեան թագաւորին յունաց» (Փ. ~~127~~ 197)։

Սուրբ Ներսէսը պատասխանեց զանազան դասակարգերի ներկայացուցիչներին, որոնք ցանկութիւն յայտնեցին փոխանակ Արշակին, ծառայել պարսից թագաւորին թէ «...Չի ամենեքեան դուք կեցեալ էք յազգէդ Արշակունեաց, ոմանք ի ձէնջ զաւառատեարք լեալք ի նոցանէ և ոմանք մեծամեծ աշխարհաց, ոմանք աւագ ուանաց գեղից

և զանձուց տեարք լեալ էք և պէսպէս դաստակերտաց, զի թէպէտ և առ արարիչն Աստուած յանցաւոր իցեն պիղծ ազգն Արշակունեաց, սակայն զձեզ կեցուցեալ զամենեսեան և յաղբոց լծոթափեալ է, զան գործով, զան պատուով, զան իշխանութեամբ, զան գործակալութեամբ, և դուք... կամիք անկանել հեթանոսաց ի ծառայութիւնն... գուցէ բարկացեալ Տէր Աստուած ձեր, և խլեսցէ զձեզ արմատանի, և մատնեսցէ զձեզ հեթանոսացն ի չար ծառայութեան, սորկութեան մինչև յաւիտեանս, և ոչ երբէք բարձցի լուծն ծառայութեան ի ձէնջ։ Եւ բողոքէք դուք առ տէր, և նա ոչ լսիցէ ձեզ, վասն զի անձամբ անկաք դուք ի ծառայութիւն հեթանոսաց և անաստուած անգէտ մարդկան» (Փ. 137, 138)։ Օտար տէրերին ծառայելը նկարագրում է մութ գոյներով և կարող է դառնալ մինչև անգամ լուծ։ Օտարը ստիպմամբ է ծառայութեան տակ ձգում։ Նախարարները գլ եցին Ցազկերտին թէ՝ «սիրով էինք կատարում քո ամէն հրամանները և վասուակի ծառայութեան տակ էինք»։ Սուրբ Ներսէսը ասում էր, որ Արշակունեաց ծառայելով մերոնք պատւի, իշխանութեան գործակալութեան և այլ իրաւունքների էին արժանացել, բայց փոխելով այդ ծառայութիւնը՝ կարող են ընկնել հեթանոսաց չար սորկութեան ծառայութեան տակ։

Ասածներից մենք տեսնում ենք, որ ծառայութիւնը գլխաւորապէս տիրոջ և հպատակի մօքով է հասկացւում, միայն թէ եթէ տէրը օտարն է՝ այդ տեսակ ծառայութիւնը կարող է մինչև անգամ փոխարկւել չար սորկութեան ծառայութեան. ծառան կամ հպատակը հողի, կալւածքի, սեպհականութեան իրաւունքից զուրկ չէր։ Նա մինչև անգամ կարող էր նախարար, բդեշխ և ազատ դասակարգի մարդ լինել։

Բայց այլ էր սպասաւորութեան ծառայութիւնը, ուր մարդը, ինչպէս կը տեսնենք, իր հողով, կայքով և անձնաւորութեամբ պատկանելիք էր տիրոջը։ Այլ էր և հարկի ծառայութիւնը։ Այդ դէպքում, ուղիղ է, ծառան զրկւած չէր իւր հողից, կայքից և այլն, նաև դորա անձնաւորութիւնը պատկանելութեան առարկայ չէր, դա ենթարկւած էր տիրոջ կամայականութեան. հարկով ծա-

ռայեցնում էին այն երկիրները, որոնք սրով էին գրաւած, կամ գրաւած էին յօժարութեամբ և այլն։

Վերջին Արշակունիների ժամանակ երկիրները կարող էին լինել «քաղաքագին», «պարգևական» և «հայրենիք»։ Երկրի տէրը ժողովրդից կարող էր առնել պտղի տասանորդ, մուտ, ռոճիկ և այլ տեսակ հարկեր, և այդ տեսակ յարաբերութիւնները հարկի ծառայութիւններ էին անւանւում։ Ուր ժողովուրդը հարկի ծառայութեան տակ էր, դորա երկիրը տիրոջն էր համարւում։ Մի օրինակ բերելով այստեղ կը բաւականանք։ «Հարկանէր և յԱնգեղ տունն զքաղաքս և հանէր ընդ սուր; քայց աշխարհն զի ոստան արքունի լեալ էր վաղ, բնակիչք գաւառին և ինքեանք կային ի հարկի ծառայութեան» (Փ. 177)։

Ուրեմն ծառայութիւն նշանակում էր հպատակութիւն. երբ այդ հպատակութիւնը օտար տիրոջն էր վերաբերում՝ վաստակի ծառայութիւն էին ասում այդ։ Երբ տէրը յաղթութեամբ էր ձեռք բերել իր հպատակի երկիրը և կամ այդ երկիրը պարգևական և քաղաքագին և կամ հայրենիքն էր, նա ունենում էր և ~~երկրի~~ իրաւունք. իսկ ժողովուրդը հարկի ծառայութեամբ էր պարտաւորւում։

Աւելի վատթար էր ստրկութեան ծառայութիւնը. այս ծառայութիւնը լծադիր է դարձնում մարդուն։ Ստրկութեան ծառայութեան մէջ մարդը իւր կայքով, ունեցածով, հողով և անձամբ պատկանելիք էր։

Մի սովորական երևոյթ էր Հին-Հայաստանում ունենալ մարդու վերայ սեպհականութեան իրաւունք։ Մարդու կեանքը, նորա ընտանիքը, կայքը և այլն կարող էին պատկանել միւսին։ Ահա և մի քանի օրինակներ։ Արշամը տալիս է Հերովդին խնդրած գործաւորները՝ հազարաւոր արհեստաւորներ (Խ. 196)։ Պակարոսը Ռշտունեաց նահապետ Պարզափրանին «խոստանայ հինգ հարիւր կին գեղեցիկ և հազար քանքար ոսկւոյ» (Խ. 135), եթէ վերջինս նորան օգնի իր նպատակին հասնելու համար։ Աշւանից Թագաւորը «խնդրեաց զմանկականն սեպհականն, զոր հօր իւրոյ շնորհեալ էր նմա ի տղայու-

*թեան 1000 երդ, առ զայն ի թագաւորէն և նստաւ ի նմա միայնակեցօք հանդերձ» (էջ 402)։*

*Տրդատը հրամանագրում է, որ եթէ մէկը չերկրպագի մեհենաց «և տուն և կեանք և արարք և ստացուածք և գանձք այնոսիկ լիցի, որ զայնոսիկ ի մէջ ածցէ» (Ագ. 35)։*

*Հէնց այստեղից մենք տեսնում ենք, որ զանազան պատճառներից էր կարող մարդու անձնաւորութիւնը պատկանելութեան առարկայ դառնալ։ Մարդու կարող էին պարգևել և տալ։ Ցանցանքների պատճառով դորան կարող էին պատկանելութեան առարկայ չհինել և այլն։ Գլխաւորապէս այդ տեսակ սեփականութեան իրաւունքը առաջ էր գալիս գերի բերելու սովորութիւնից։ Գերութիւնը մի սովորական երևոյթ էր թէ Հայկազանց ժամանակ և թէ ևս առաւել Արշակունեանց ժամանակ։*

*Կռիւները հէնց կարծես գերի առնելու համար էին մղւում։*

*Կռիւների ժամանակ աւերում՝ էին մէկը միւսի երկիրը․ կոտորում էին՝ գլխաւոր չափահաս արանց, իսկ մնացածներին, ում կարող տնում էին, գերի էին տանում իրանց աշխարհը։*

*Մուշեղը, օրինակ, «զամենայն երկիրն դաւառացն Ատրպատճայն աւերէր, և առնոյր գերէր բազում գերութիւն». նոյնը նա անում էր Նուշիրական աշխարհում, որպէս և Կորդւաց, Տմորեաց, Մարաց գրկիրներում, Արցախում, Աղւանքում, Կազբից, Վրաց երկիրներում և Աղձնիքում (Փ. 175—178). «Զայր ի չափ հասեալ առհասարակ կոտորէին, և զայլ ամենայն ի գերութիւն վարէին (Փ. 48)։ Տիգրան զգերութիւն Հրէից նստուցեալ ի յԱրմաւիր և ի յաւանին Վարդգիսի» (Խ. 131)։ Թագաւորները թէ իրանց էին յատկացնում գերիներին և թէ ընծայում էին վաստակաւոր և պատերազմներում քաջութիւն ցոյց տւող մարդկանց։*

*Տրդատը, օրինակ, մասն էր հանում պատերազմից բերած աւարներից. «նաև ¹/₅ ևս հանէր յամենայն մեծամեծ աւարացն, և մեծամեծ պարգև քրմացն շնորհէր» (Ագ. 27)։ Արտաշէսը Երուազից գերի բերած ծառաներին պարգևում է Սմբատին։ «Եւ ապա աւար առեալ զգանձսն Երուազայ և զծառայս անձինս 500—բերէ Արտաշիսի։ Եւ Արտաշէս պարգևէ Սմբատայ զծառայսն Երուազայ» (Խ. 185)։ Այսպիսով գերիները դառնում էին թէ թագաւորի և թէ*

մասնաւորաց սեփականութիւն։ Գերիների նստելու տեղը՝ գիւղ, դաստակերտ և ձեռնակերտ էր անւանւում։ Մարաց գերութիւնը Տիգրանը գլխաւորապէս նստացրեց դաստակերտներում։ Սմբատը Երուազից գերի բերածներին նստացնում է Բագարան անւանեալ ձեռակերտում։ «Յայնժամ Սմբատայ զծառայսն Երուազայ զոր գերեացն ի Բագիրանէ, տարեալ բնակեցուցանէ... ի նոյն անուն Բագարան կոչեցեալ գձեռակերտն» (Խ. 186)։ Վարդգէսի աւանին վերայ գիւղ անունը աւելացաւ, երբ այդտեղ նստացրին Հրէից գերութիւնը։ «Այս Երուանդ... զորոյ զքոյրն կին առեալ Վարդգէսի, շինեաց զաւանս զայս, յորում և Տիգրան միջին յԱրշակունեաց նստոյց զհասարակ առաջնոյ գերութիւն Հրէից, որ եղև քաղաքագիւղ վաճառօք» (Խ. 205)։

Քննելով այս առարկան, կը տեսնենք, որ հէնց գեղերը և դաստակերտները եկեղեցուն, նախարարներին, թագաւորին և այլոց էին պատկանում։ Յայտնի բան է, որ այդ տեսակ սեփականութիւնը ծագում էր մարդու վերայ ունեցած սեփականութիւնից։ Վահնունիք Երակլի պատկերը տարան «ի Տարօն, իւրեանց սեփական գիւղն Աշտիշատ (Խ. 123)։ և ցասուցեալ ընդ Վահունիսն թէ ընդէ՞ր յիւրեանց սեփականքն իշխեցին կանգնեցին զպատկերն Երակլի... ընկենու (Տիգրանը) զնա ի քրմութենէ, և զգիւղն յարքունիս առնու, յորում պատկերին կանգնեցան» (Խ. 129 ~~123~~)։ Խոսրովը «ետ զբուն զահոյից գեղն նահապետի Մանավազենից, եպիսկոպոսին Աղբիանոսի, զՄանավազակերտ ամենայն սահմանօքն և գաւառակաւ հանդերձ» (Փ. 9)։ Դանիէլ քորեպիսկոպոսին նախարարները տան «ի գիւղն եկեղեցւոյ ի Թիլն» (Փ. 33)։ Դղակ մարդպետը գալիս է «ի մեծ ի գիւղն ընջին (?) արքունի, որում Արդեանսն կոչին» (Փ. 171)։ Ամատունիք «պատուին Արտաշիսէ գիւղիւք և դաստակերտօք» (Խ. 201)։ Տիրանը տալիս է Գնէլին «զկալւածս գիւղից և դաստակերտաց» (Խ. 308)։ Տրդատը տալիս է Մամգունին «յաւիտենական իշխանութեամբ զգիւղս և զդաստակերտս և զամենայն իշխանութիւն ազգին Սլկունեաց (Խ. 249)։

Ուրեմն մենք տեսնում ենք, որ գիւղերը, դաստակերտները իբրև սեփականութիւն, կալւածք՝ յաւիտենական պատկանելիք էին համարւում։ Գիւղերը և դաստակերտները գետնով, սահմանով և սպա-

*սաւորներով պատկանելութեան առարկայ էին դառնում։ Տրդատը, օրինակ, նուիրում է եկեղեցուն «զգեօղն (Թորդան) ամենայն դաստակերտօքն և գետնովքն հանդերձ սահմանօքն» (Ագ. 356)։ «Եւ զդաստակերտն և զպաստւորսն քրմովքն հանդերձ և նոցին գետնովքն և սահմանօք ի ծառայութիւն նուիրեցին եկեղեցւոյ սպասաւորութեան (Ագ. 454)։*

*Միւս կողմից մենք տեսնում ենք, որ ոչ միայն գեղջուկը այլ և սպասաւորները դասակարգ էին կազմում։ Օրինակ, Վասակ սպարապետը թողեց «զԹագաւորն Արշակ յամուր տեղւոջ ուրեմն յերկրին Մարաց, հանդերձ սպասաւորօքն» (Փ. 126.) և այլն։ Բայց հաւանական է, որ դոքա միևնոյն դասակարգի մարդիկ էին։ Եղիշէն գեղջուկը վշտացեալ է նկարում. «ոչ երևէր աւելի տէր քան զծառայ և ոչ ազատ փափկացեալ, քան զգեղջուկ վշտացեալ (Եղ. 130. 131)։ Վաղարշակը «հրաման տայ քաղաքացեաց մարդկան արգոյ և պատիւ լինել քան զգեղջկաց, և գեղջկաց պատուել զքաղաքացիս որպէս զիշխանս» (Խ. 117։)։ Ուրեմն գեղջուկը վշտացեալ է, դորա գետինը իրան չէ. դա պարտաւոր է պատուել քաղաքացուն իշխանի տեղ և այլն։ Անտարակոյս գիւղացիք սեպհականութիւն էին եկեղեցու, նախարարների, Թագաւորների և այլն։ Սորանք գերիներից էին ծագում։ Հաւանական է, որ սորանց վրայ տէրը կեանքի և մահու իրաւունք էլ ունենար։ Կարելի է կարծել, որ բերած գերիները սկզբում ստրկութեան կարգումն էին պահւում։ Թովմայ Արծրունին ասում է, որ Տիգրանը գերի է բերում Աժդահակի որդկերանցը և կացուցանում է «ի կարգի ստրկութեան։ Սոքա զփոյթ հպատակութիւն ցուցեալ, կարգէ ի գործ ծառայութեան» և յետոյ առաջացնում է մինչև «ի գահ նախարարութեան»։ (Թովմ. Արծ. 38)։*

*Ձենք սխալւիլ, հիմնւելով վերոյիշեալների վերայ, ասել որ գերիները՝ նաև ստրուկ, սպասաւոր և գեղջուկ անունն էին ստանում և ամենավատթար դրութեան մէջ էին Հին-Հայաստանում։ Մեծ բարեպաշտութիւն էր համարւում գերիներ ազատել, դրանց գերեդարձ անել և այլն։ Սուրբն Ներսէս, օրինակ, «բազում նեղելոց և տառապելոց գերեաց փրկութիւն և գերեդարձ առնէր, զորս ահիւ քարոզութեան փառացն Քրիստոսի զկէս և զայլսն գնովք փրկանօք ազատէր և յիւրաքանչիւր տեղիս դարձուցանէր» (Փ. 65). Ցակովք*

Նախիկայինը հեռևում է համոզել Մանուչեհր Աշտուանունն ազատել գերի առած ումիկներին, այլ և սասել յարմարում է և հրամայում է՝ ծախել նոցա ու ի գերի առած սարկաւագներին (Փաւստ. (285:)։

Այժմ մեզ հասկանալի կը լինի Հայկազանց ժամանակ ծագած իրաւունքները։

Մենք տեսանք, որ երկիրը ժառանգելու իրաւունքը պատկանում էր թէ հօրազատ և թէ մերձաւոր ցեղերին։ Միայն Հայկազեաններից հօրազատ ծագումն ունեցողները յաղթուածի երկրի, աշխարհի կամ սահմանների վրայ մի տեսակ երկրի կամ կալուածքի իրաւունք էին ստանում, որով հարկի ծառայութեան տակ էին պահում յաղթուած ժողովրդին։ Արշակունեաց ժամանակ էլ, ուր ժողովուրդը հարկի ծառայութեան տակ էր, նորա երկիրն էլ տիրոջն էր համարւում. և այս իրաւունքը զարգանալով վերջին Արշակունեանց ժամանակ երկիրները լինում էին հայրենիք, պարգեւական և քաղաքային և երկրատէրը որոշ տեսակի հարկ էր առնում ժողովրդից, այսինքն նորան հարկի ծառայութեան տակ էր պահում։ Ծէնը կամ կլանը և մերձաւոր ցեղերը զուրկ էին այս իրաւունքից։ Ընդհակառակը չէր մինչև անգամ ցեղից հօրազատ ծագումն ունեցողների ձեռաց (այսինքն առաջնորդութեան) տակ էր։ Ծէնը, մերձաւոր ցեղ էլ դառնալով, միայն իր ժառանգած երկրի և ոչ թէ յաղթուածի երկրի վրայ էր իր իրաւունքը պահպանում։ Թէ մերձաւոր ցեղերը և թէ հօրազատ ցեղերը և ծնունդները ունէին իրեանց առաջնորդները, գլուխ կանգնածները. և Հայկազանց ներքին կեանքի մէջ կար մի տեսակ տիրոջ և ծառայի կամ տիրոջ և հպատակի իրաւունքը։ Արշակունեանց ժամանակ էլ ծառայութիւնը այն յարաբերութիւնն էր, որը ծագում էր տիրոջ և հպատակի մէջ։ Նախարարները, բդեշխները և իշխանները, իբրև հպատակներ, թագաւորի ծառաներ էին համարւում, մինչև անգամ ամենայն աշխարհով և ուժով։ Ծառան զուրկ չէր կալուածքի և սեպհականութեան իրաւունքից։ Մօտաւորապէս և Հայկազանց ներքին յարաբերութիւնները միմեանց հետ այդ տեսակ էր։ Այլ էր լուծը։ Գերի բերած ժողովուրդը Հայկազունք լուծի, այսինքն չարաչար հարստահարութեանց, տակ էին պահում։ Այդ տեսակ մարդը տիրոջ սեպհական

գրաւելով ինքը տիրեց բոլոր ազգին։ Սելևկացոց Հրանդ կուսակալը իշխանապետ էր Հայոց։ Դորա ժամանակ Արտաւազդը կամ Արտաւազանը, որը տեղական աւագ իշխաններիցն էր, տիրեց մեր երկրին։ Առ հասարակ մենք տեսնում ենք, որ հին իշխանութիւնների բնաւորութիւնը փոփոխւում էր, բայց նոյն հայ իշխանները մնում էին։ Սրանց մէջ, երբ Հայք անկախ էին լինում, կային այնպիսիները, որոնք տէրութեան իրաւունք էին վայելում. կային և այնպիսիները, որոնք լոկ իշխաններ էին։ Հայկը, Պարոյրը նախարար անունն էին կրում։ Խորենացու ասելով Խոռից ծագել էր Խոռխոռունի ազգի մեծ նախարարութիւնը։ Ուրեմն մեր ցեղերի և ծնունդների գլուխ կանգնածները իրանց անկախութեան ժամանակ նախարար էլ էին անւանւում։ Հետևապէս նախարարութեան և տէրութեան իրաւունքը մէկ էր. իսկ նախարարութիւնները Վաղարշակից շատ առաջ էին մեր մէջ ծագել։

Վաղարշակը գրում է Արշակին, որ նա թոյլ տայ իրան դիւանատներից դուրս բերել տեղեկութիւններ «թէ ով ոմանք յառաջ քան զիս իցեն տիրեալ աշխարհիս Հայոց, և ուստի նախարարութիւնքս որ աստ կան. զի ոչ կարգք ինչ լեալ աստ յայտնի... և ոչ գլխաւորաց աշխարհիս յայտնի է առաջինն և ոչ վերջինն, և ոչ այլ ինչ օրինաւոր, այլ խառն ի խուռն ամենայն և վայրենի (Խոր. եր. 29) [1]։ Խորենացին էլ է հետևում նախարարութիւնների մասին մանրամասն տեղեկութիւններ տալ։ «Թէպէտ զՀայաստանեայցս նախարարութիւնս, զամենեցուն զնուսն և զգիւարդն յայտնելով համառօտ, որպէս հաւատոյ ի յունականս ոմանս կայ պատմութիւնս» (Խ. եր. 3)։ Խորենացու ասելով, նախարարները Սարդանապալի օրերից սկսեցին առաջ գալ (Խոր. եր. 31)։ Վաղարշակը, յաջորդելով Հայկազանց

---

[1]) Թէ ինձանից առաջ ով է տիրել հայկական աշխարհին և թէ որտեղից են այս նախարարութիւններն, որ այստեղ կան։ Որովհետև յայտնի չէ, թէ այստեղ եղած լինին ոչ կարգեր, ոչ մեհեանների պաշտամունք։ Այս աշխարհի երևելիներից յայտնի չէ ոչ առաջինն և ոչ վերջինը. և չկայ ոչինչ օրինաւոր, այլ բոլորը խառն ի խուռն է և վայրենի (Խ. Թ. վ. Ս. 26)։

[2]) Ցոյց կտանք Հայաստանի բոլոր նախարարութիւնների և ամենքի որտեղից և ինչպէս լինելը (սկիզբը և գործերը), կ՚յայտնենք համառօտ [illegible] կայ քանի մի յունական պատմութիւնների մէջ (եր. 4.)։

որոնցից ի հարկէ նախարարներն էլ իրանց չափով զուրկ չէին։ Դա իր գեղջուկը և ազատաւորն ունէր, ունէր նաև կալուածքի վրայ որոշ իշխանութիւն։ Այդպէս էլ յիրաւի ապագայում մենք դրանց գիւղերի, դաստակերտների և իշխանութեան տէրեր ենք տեսնում։

Նախարարը կարող էր և լոկ միայն պաշտօնեայ լինել՝ ինչ-պէս կային արքունիքում խոհանոցի վրայ կարգուած նախարար-ներ և այլն։ Օրինակ, Վահնունեաց, իբրև նախարարների՝ քրմու-թիւնն էր յանձնած։

Ահա և այլ օրինակներ, որոնք ուրիշ կողմից կարող են պար-զել մեզ այս առարկան։ Բագարատը տանուտէրական պատիւն է պարգև ստանում, կուսակալ է կարգւում, և նրանից ծագած ազգը իրաւունք է ստանում կոչւել Բագրատունի (Խոր. եր. 103, 109)։ Արծրունեաց և Գնունեաց տները Սենեքերիմի զաւակներից էին։ Գնունիք աւագ նախարարութեան շարքումն էին կարգուած (Փ. 110). Թագաւորութեան երկրորդը կարգւեց Մարերի Աժդահակ Թագա-ւորի զաւակից։ Այս ազգի նահապետին տուում էին մարաց տէր, և դորա վրայ թողնւեց բոլոր շէնը, որը մարաց գերութիւնից էր գոյացել (Խոր. 112)։ Աշոցի տէրութեան և Տաշրի սեպհականու-թեան վրայ Գուշարայ Հայկազնոյ զաւակները կարգւեցան (Խ. 113)։ Շաւարշը, որ Սանասարայ տանից էր, հաստատւում է բդեշխ և կուսակալ և Արձն գաւառն է պարգև ստանում (Խոր. եր. 116)։ Ոշտունիք և Գողթնեցիք Սիսակեաններից էին ծագում. միայն Խո-րենացին չի կարողանում հաստատել, թէ այդ անուններից էին իրանց գաւառները կոչուած, թէ գաւառների անուններից էին նա-խարարները կոչւում։

Այստեղից մենք տեսնում ենք, որ կային որոշ ծագումն ունե-ցող արտօնութիւններ, այսինքն կալուածքի կամ իշխանութեան իրաւունք ձեռք բերած զաւակներ, որոնք տներ էին կազմում։ Այդ զաւակներից մէկը իր մատուցած ծառայութիւնների կամ այլ պատճառով կարող էր տանուտէրական պատիւ ձեռք բերել, տան գլուխը լինել, որը նահապետ էր անւանւում։ Այսպիսի տների մէջ ամենք նախարարական էին, կային որ այդպիսի զաւակներից տէրու-թեան վրայ էլ էին կարգւում, ինչպէս Գուշարայ Հայկազնոյ զաւակները Աշոցի տէրութեան վրայ էին կարգուած։ Պատահում էր,

որ նախարարական տների անուններիցն էին գաւառների անուն-ները կոչւած, երբեմն էլ գաւառների անուններիցն էին նախարա-րութիւնները կոչւում։ Այստեղից երեւում է, որ նախարարները այլ ևս ցեղապետներիցը չէին, այլ ցեղից առաջացած ազնւականներից, որոնք դեռ ևս ցեղերին յատուկ սովորութեամբ տներ կամ ծնունդ-ներ էին կազմում։ Այդպիսի արտօնութիւն վայելող ազնւական ծնունդները Արշակունեաց ժամանակ տոհմեր էին անւանւում։ Ազգերի, տոհմերի կամ նախարարութիւնների գլուխ կանգնածնե-րին նահապետ էին անւանում։ Օրինակ, ասում էին Զնորա՝ նա-հապետ ազգին Մուրացան, Համշագրամ՝ նահապետ Ապահունեաց տոհմին, Աբեղոյ՝ նահապետ Աբեղենից տոհմին, Գարգափրան՝ նահա-պետ Ռշտունեաց նախարարութեան։

Եթէ Արշակունիները ցանկանում էին հարազատութեան կամ մատուցած ծառայութեան կամ առանձին շնորհքի պատճառով մէ-կին առաջացնել, դորա ընտանիքը կամ ծնունդը ազգ էին սե-րում, այսինքն բարձր դասակարգի շարքն էին անցկացնում։ Ոմանք իրանց ազգ էին սերում, ոմանք էլ ազգ սերելով՝ նախարարու-թեանց թիւն էին անցնում։

Սլկունիք Վաղարշակից ազգ էին սերւած, և կար այդ ազգի նահապետը։ Գուշարայ Հայկազնոյ զաւակները կարգւած էին Աշոցայ տէրութեան վրայ։ Այդ ազգից Տաճատը Աշոցայ գաւառի վրայ իշ-խան կարգւեց։ Բզնունիք նախարարներ էին Վաղարշակի օրով կարգւած, Տիրանի օրով Դատաբէն Բզնունեաց ՝իշխան էր ան-ւանւում։

Նախարարական տներում, ուրեմն, նահապետը, կամ նա, որը թագաւորի կողմից և կամ այլ պատճառով առաջացրած էր, այդ նախարարութեան նահապետը կամ իշխանն էր անւանւում։ Դա, կարելի է ասել, ցեղապետի կամ լայն մտքով իր գաւառի կամ ժողովրդի տէրն էր։ Բայց դրանցից դուրս կային և մեծամեծները։ Առաջի Արշակունիները կարգել էին առաջնակարգ ազգեր կամ իշ-խանութիւններ, այսինքն մեծ նախարարութիւններ։ Բդեշխները, սահմանակալները, Անգեղեան մեծ իշխանը, թագադիր ասպետը, սպարապետը, Մոկաց, Սիւնեաց, Ռշտունեաց, մաղխազութեան և սպարապետութեան իշխանները և Շահապը՝ Շահապիվանի մեծ

մեծների շարքում էին։ Սրանք էին կուսակալները, կողմնակալները, հազարապետները և բիւրաւորները։

Տրդատը դիմում է, օրինակ, հրովարտակով մեծամեծներին, իշխաններին և նախարարներին։ Չորրորդ դարում նախարարների աւագանիքը՝ «մեծամեծներ», «մեծամեծ աւագանիք», «պատուական և մեծամեծ աւագանիք», «մեծամեծ իշխաններ», «մեծամեծ» և կամ գլխաւոր նախարարներ էին անւանւում։

Ուրեմն այդ ժամանակամիջոցում կային գլխաւոր նախարարները կամ մեծ իշխանները, իշխանները կամ նախարարները և ազատները կամ ազգերը և կամ ազնւականները։

Հետևապէս նախարար խօսքը վերաբերում էր իշխողին կամ գլուխ կանգնեցրածին։ Դրանց մէջում կային մեծ իշխաններ, իշխաններ և ազատներ։

Նախարարները սկզբում ժողովրդի տէրերն էին՝ կառավարութեան մտքով։ Գիւղերի և ագարակների սահմանները որոշելով, Արտաշէսը (Հոմի) գետնի իրաւունք մտցրեց, և ի հարկէ այդ ժամանակ նախարարները իրանց գիւղերի և դաստակերտների գետնի տէրերն էլ դարձան։ Հետզհետէ դրանց իրաւունքները լայնանում են, որովհետև նախարարները հետևում էին իրանց ժողովրդի տէր լինելուց ջոկ՝ տեղի, գետնի և հողի իրաւունքն էլ ձեռք բերելու։ Այդ իրաւունքները զանազան ժամանակամիջոցներում էին ծագել և տարբեր բնաւորութիւններ ունէին։ Նախարարներին յաջողւում է մասամբ տեղի իրաւունք ձեռք բերել, և դրանք, ժողովրդին առաջնորդ և տէր լինելուց զատ՝ դատաւոր էլ են դառնում. միայն թէ այդ դրանց յաջողւում է Դ. դարում։

Հողային զանազան տեսակ իրաւունքների քննութիւնը վերաբերում է Արշակունեաց շրջանին. այստեղ հարկ ենք համարում միայն կարճօրէն նկարագրել, թէ ինչպէս էին նախարարները տիրանում այդ իրաւունքին։

Աղձնեաց բդեշխը Աղձնեաց իշխանն էր։ Չորրորդ դարում դա Աղձնեաց մեծ իշխան է անւանւում։ Երրորդ դարում մենք տեսնում ենք Անգեղտան իշխանին, որը և մեծ իշխան էլ է անւանւում։ Չորրորդ դարում դա որոշ տան գաւառի իշխան էր և

որոշ կողմերում արքունական՝ շահուց և եկամտից հաւատարիմն էր։ Տրդատի ժամանակ Սիւնեաց կողմնակալը անւանւում էր իշխան, կամ նահապետ կամ Սիւնեաց աշխարհի իշխան. հետզհետէ դա Սիւնի կամ Սիւնեաց գաւառի իշխան է անւանւում և չորրորդ դարում Սիւնեաց գաւառի տէր անւանւեց։ Ռշտունեաց նախարարութեան նահապետը հետզհետէ անւանւեց Ռշտունեաց աշխարհի իշխան, Ռշտունեաց իշխան, չորրորդ դարում դա սկսեց Ռշտունեաց նահապետ, Ռշտունի և կամ Ռշտունեաց գաւառի տէր անւանւել։ Անձևացեաց տոհմի իշխանը հետզհետէ անւանւեց նահապետ Անձևացեաց և տէր գաւառին Անձևացեաց. Կամսարականք անւանւում էին իշխանք Շիրակայ և Արշարունեաց, նահապետ Արշարունեաց, իսկ չորրորդ դարում տեարք Շիրակայ և Արշարունեաց։ Չորրորդ դարում առաջ եկան նոր գաւառատէրեր՝ Ձորայ, Կողբայ, Գարդմանայ ձորոյ և այլն. առաջ եկան գաւառների իշխաններ՝ Վանանդայ, Հաշտենից, Գողթան և այլն. գաւառների նահապետներ՝ օր. Հրսեձորոյ, Բաքենից և Հապուժենից... Միևնոյն ժամանակ Տրդատի օրով եղած Ուտէացւոց, Գարտամանացւոց, Մոկաց աշխարհակալ իշխաններին դեր կատարելիս չենք տեսնում։ Կարծես չորրորդ դարում գաւառի կամ երկրի վրայ մի տեսակ իրաւունք էին ձեռք բերել նախարարները և տէրերը։ Անգեղտան գաւառը Ոստան արքունի էր (Փ. 173—178)։ Կային եկեղեցական գաւառներ (Փ. 25)։ Պապը ստիպւած է իր հօր յափշտակած Շիրակայ և Արշարունեաց գաւառները յետ դարձնել Կամսարականներին։ Տասնուհինգ գաւառներ ուած էր ձեռական իշխանութեամբ եկեղեցուն (Փաւ. երես 26)։ Տայքը Մամիկոնեանների աշխարհն էր համարւում (Փ. 21)։ Շապուհը անպայազատ էր արել Սիւնեաց տոհմը. իսկ Մանուէլը Սիւնեաց տան կոտորածից մնացած երեք պատանիներին յետ է դարձնում նրանց երկիրը. դրանցից առաջինը երկրի վրայ տէր է կարգւում, իսկ միւսները իրանց չափով (Փ. 211)։ Շապուհը խոստանում է Մեհրուժան Արծրունուն յետ դարձնել նորա աշխարհը և տունը (Փ. 152)։ Մանաճիհր Ռշտունին (Խ. 320) մեծ իշխան աշխարհատէր էր (Փ. 21)։ Կար «Մոկս Շահունւոյ» որը հաւանական է Շահունեաց պատկանեալ Մոկաց գաւառն էր։

Հետզհետէ մենք տեսնում ենք, որ երկիրները լինելով գանձագինք, պարգևականք և քսակագինք, պատկանելութեան առարկայ էին դառել և իբրև ժառանգութիւն անցնում էին որդւոց որդի։ Միևնոյն ժամանակ նախարարների իրաւունքը այնքան է լայնանում, որ դոքա ուղղակի տէրութիւնների գլուխ էին կանգնած լինում։ Յազկերտը, օրինակ, բարկանալով նախարարներից մէկի վրայ, տէրութիւնը նրանից խլում է, «հանեալ ի բաց զտէրութիւն ի նմանէ» (Եղ. եր. 14)։ Մանուէլ սպարապետը կարգում էր «նահապետս և տեարս գաւառաց (Փ. երես 124)։ Անտարակոյս երկրի և տէրութեան իրաւունքի պատճառով էր Տարօնի իշխանը եկեղեցուց կորզել դորա շահեցողութեան տակ եղած Կուասս և Պարեխ անուանեալ գիւղերը։ Արծրունեաց Վարդպատրիկ իշխանը գանձագին է անում այդ գիւղերը Տարօնոյ իշխանից և կրկին նւիրում է եկեղեցուն (Զեն. գլ. 12)։ Երբ Վահանը, Մամիկոնէից տան իշխանը, նստեց Տարօնոյ իշխանութեան աթոռը և տարաձայնութիւններ էր ծագել դորա և պարսից թագաւորի մէջ, Վահանը երկիրը իրանը համարելու պատճառով, պահանջեց զօրքի կողմից իր երկրին հասցրած վնասը։ Վահանը ասաց. «180,000 դահեկանի խոտ են կերեալ ի դաշտէդ, և 60,000 դահեկանի որ զեղն և զեղջերու և զնապաստակ երկրիս որսացեալ են և կերեալ, զջրոյ և զհացի գինն թողում։ Բայց զանոյշ գինին Սալնոյ և Ասորոց և զՄոխրաց այս երկու տարի է՝ որ չինէին կփրեալ էին և ինքեանք արբին, զայն թող տան, և զվեց գաւառին հարկն զոր առեալ են, և զքաղաքի մուտն 400 դահեկան, զայդ ամենայն թող բերեն... (Զեն. գլ. 38)։ Ուրեմն տէրութեան գլուխը երկրի ամայի մասը՝ անտառը, արօտը ամբողջապէս իրանն է համարում, իսկ երկրի չէն մասից էլ ստանում է, գաւառներից՝ հարկը, քաղաքներից՝ մուտքը։ Այգիներից գինի է ստանում, երևի, հարկի տեղ։ Մինչև անգամ գիւղերի և դաստակերտների իրաւունքի մէջ էլ է խառնւում, թէև դրանք միանաւորաց սեպհականութիւնն էին դարձած։ Գաւառները ունենում էին իրանց իշխանը։ Մենք տեսնում ենք, որ դաշնակից կամ համհարզ նախարարները ունենում են հետզհետէ իրանց գլուխները (Եղ. 173), որը մեծ իշխանը կամ գլխաւոր նախարարն էր։ վերաբերեալ միւս իշխանները կամ նախարարները մինչև

անգամ գաւառապետներ էին անւանւում (Յով. Ման. 30); Գաւառակալ կամ իշխան Նախարարի ձեռօք էր զօրքը գաւառից մասնի հաշւով դուրս բերւում, բայց համհարզ Նախարարների բոլոր զօրքերը աւագ Նախարարի իշխանութեան տակ էին։ Նախարարները առաջնորդում էին զօրքին և մինչև անգամ, հայոց անիշխանութեան ժամանակ, այր[redacted] էլ դրանց առաջնորդութեան տակ էին։

Դատաստանական իրաւունքը կարծես բաժանւում էր թագաւորի և մեծամեծների մէջ։ Եկեղեցին, իւր ծխական իշխանութեամբ ունեցած երկիրներից ստանում էր պտղի և տասանորդ։ Գաւառապետ կամ իշխան Նախարարներն էլ հաւանական է, որ սոյն տեսակ իրաւունքների տէրեր էին։ Դա իշխանութեան կամ կալւածքի իրաւունք պիտի լինէր։ Գաւառատէր կամ մեծ իշխան Նախարարները, իրանց երկիրը իրանցն էին համարում, և այդ պատճառով արօտատեղերից, անտառից, այգիներից, ժողովրդից, քաղաքներից որոշ հարկեր էին առնում զանազան անուններով։ Թագաւորը իր հպատակներից միայն հարկ էր առնում, իսկ այն երկրից, որը սստան արքունի էր, նրան հասնում էր և այդ իրաւունքով պատկանելի ստանալիքները։

Հետևապէս ժողովուրդը որոշ տեսակ հարկեր էր տալիս թէ իշխանին կամ կրտսեր նախարարին, թէ մեծ իշխանին կամ աւագ Նախարարին, թէ ~~մեծ~~ թագաւորին։ Մենք այստեղ մտադիր չենք մանրամասն խօսելու Նախարարութեան և կամ յիշւած իրաւունքների մասին։ Նախարարները, սկզբում լինելով միայն ժողովրդի տէրը, իշխողի կամ կառավարողի մտքով, հետզհետէ երկրի և տէրութեան իրաւունքը ստացան։

Հետևապէս մենք տեսանք, որ հարազատ արիւն ունեցողներից առաջ եկան ազնւականները՝ ազգերը և տոհմերը։ Սրանց մէջ ցեղական սովորութիւնները մնում էին և դրանք տներ էին կազմում, որոնք ունէին իրանց տանուտէրերը։ Միապետութեան ժամանակ թագաւորներն էլ էին այդպիսի ազնւականներ առաջացնում՝ ազատերում, տանուտէրական պատւի արժանացնում։ Այսպիսի տներում ցեղական սովորութիւններ էին տիրում։ Սեպհականութիւնը և կալւածքի իրաւունքը ամբողջ տանն էր, իսկ տանուտէրը մի

տակ գերիշխանութիւն ունէր տան վրայ։ Այս մտքով նա նախարար և ազատ էր անւանւում։

Այստեղից ոմանք նախարարութեան կարգն էին գցած, բայց զանազան չափով։ Կային աւագ և կրտսեր նախարարներ։ Իշխաններըՙ կրտսեր նախարարներ էին անւանւում։ Մեծ իշխանաց՝ աւագ ու [illegible] եւ էին անւանւում։

Կային ազատաց կամ ազնւականաց տներ։

Արշակունեաց ժամանակ սկզբում նախարարները ժողովրդի տէրերն էին մօտաւորապէս ցեղական սովորութեամբ. նրանք գաւառականներ և կուսակալներ էին անւանւում և զօրքի առաջնորդներն էին, բայց ժառանգաբար երկրի իրաւունք չունէին. ուժեղանալով միայն այդ տեսակ իրաւունքներ էլ ձեռք բերին։

Մեր աշխատութեան հետևեալ բաժնում կը տեսնենք թէ ինչ անբաւականութիւններ էին ծագել մեր թագաւորների և նախարարների մէջ, երբ առաջինները չցանկացան դրանց տէրութեան և երկրի իրաւունքը ճանաչել։ Վերջապէս նախարարների երկրի և տէրութեան իրաւունքը ճանաչւեց։

Հետևապէս աւագ նախարարութիւնները տէրութիւններ էին մանաւանդ ցեղական կազմակերպութեան ժամանակ, երբ դոքա անկախ էին լինում։

Բայց նախարարի դէպի իրան ժողովուրդը ունեցած իրաւունքը սկզբում աւելի թոյլ էր, մանաւանդ Հայկազանց ժամանակ, երբ ցեղական կարգ ու կանոնները և ազատութիւնները սահմանափակում էին նախարարների իրաւունքները։

**Վ Ե Ր Ջ**